# ՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅԱՆ ԵՐԴՈՒՄ



Պատանի ընթերցող, հիշո՞ւմ ես այն օրը, երբ քո ընկերների առաջ հանդիսավոր խոստում տվեցիր, և քեզ ընդունեցին լենինյան պիոներիայի շարքերը: Դու մենակ չէիր. քեզ հետ միասին կարմիր վզկապ սկսեցին կրել նաև ձեր դասարանի մյուս տղաներն ու աղջիկները: Ձեր դասարանում ստեղծվեց պիոներական ջոկատ, և բարձր դասարանցիներից մեկը նշանակվեց ձեզ մոտ ջոկատավար: Այդ օրից անցել են շաբաթներ, ամիսներ և նույնիսկ տարիներ: Ջոկատավարը ձեզ համար հետաքրքիր հավաքույթներ է անցկացնում, երգ ու պար սովորեցնում, կազմակերպում է գրքի քննարկումներ, կինոնկարների դիտումներ, հանդիպումներ գրողների, նկարիչների, պատերազմի վետերանների հետ, նրա խորհրդով դուք օգնության եք հասնում մեկդ մյուսին, հավաքում եք մետաղի ջարդոն և կանաչ օգտակար գործեր կատարում:

Մեր մեծ երկրում շատ ու շատ պիոներական ջոկատներ կան: Եվ պիոներներին օգնելու համար կոմերիտմիությունը իր լավագույն անդամներին ուղարկում է պիոներական ջոկատները: Կոմերիտմիությունը միշտ հոգ է տանում, որ դուք լավ սովորեք, մասնակցեք սպորտային խաղերին, լինեք առողջ ու բազմակողմանիորեն զարգացած: Եվ երբ դուք մեծանում եք, դառնում 7— 8-րդ դասարանի աշակերտ, ձեզանից լավագույններին ընդունում է իր շարքերը: Վերջին չորս տարիների ընթացքում կոմերիտմիության շարքերն են ընդունվել 12 միլիոն պատանիներ ու աղջիկներ:

Բայց կոմերիտականները միայն ջոկատավարներ չեն աշխատում: Մեր երկրում չկա մի բնագավառ, ուր չլինեն կոմերիտականներ: Նրանց թիվը հասնում է 23 միլիոնի: Դա վիթխարի մի ուժ է, որն իր անձնվեր աշխատանքով ամեն օր, ամեն ժամ մեծացնում է մեր հայրենիքի հզորությունը:

Այո՛, նրանք են, որ լենինյան կուսակցության կոչով յուրացնում են նոր հողեր, բացում Սիբիրի ու Ղազախստանի գանձարանները, վերափոխում Հեռավոր Արևելքի ու Ծայր Հյուսիսի բնությունը, հերոսական գործեր կատարում Անդրբևեռի հարվածային կառույցներում, համայնական դաշտերում աճեցնում են արևահամ խաղող ու սպիտակափրփուր բամբակ, ոսկեհատիկ ցորեն ու հյութալի մրգեր, գործի են գցում հզոր մեքենաներն ու վեր բարձրացնում բազմահարկ շենքեր: Այդ նրանք են, որ դպրոցներում, համալսարաններում, ինստիտուտներում ու տեխնիկումներում սովորում են ջանասիրաբար, տիրապետում գիտելիքներին, որ դառնան իրենց ծնողների արժանավոր փոխարինողները:

Ու այսօր էլ, երբ սովետական ժողովուրդը իրականացնում է հնգամյա պլանի առաջադրանքները, նոր, վիթխարի խնդիրներ են դրվում կոմերիտմիության առաջ: Այդ խնդիրները քննարկելու համար էր, որ այս տարվա մայիսին մեր լայնարձակ հայրենիքի ամենատարբեր վայրերից Մոսկվա մեկնեցին մոտ 4 հազար կոմերիտականներ: Կրեմլի համագումարների պալատում տեղի ունեցավ կոմերիտմիության հերթական 15-րդ համագումարը, որին մասնակցելու համար աշխարհի 72 երկրներից իրենց պատվիրակներն էին ուղարկել երիտասարդական կազմակերպությունները:

Համագումարների պալատի լուսավոր կամարների ներքո 23 միլիոնանոց լենինյան կոմերիտմիությունը իր պատգամավորների բերանով կրկին անգամ երդվեց հավատարիմ լինել իր հայրերի իդեալներին, Լենինի գաղափարներին, լենինյան կուսակցությանը: Ու որպես սրբազան երդում հանդիսավոր կերպով հնչեց.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Լույս է տեսնում 1923 թվականից

№ 6 ՀՈՒՆԻՍ 1966 Թ.

Իրիկնանում էր։ Նրանք քայլում էին Հոկտեմբերյանի ջրանցքի թմբեզրով, որն իր սկիզբն առնում է Արաքսից։ Ինչպես միշտ, առջևից գնում էր բարձրահասակ Ֆրիդմանը, հետո Հրանտը, իսկ վերջից՝ փոքրիկ Վաչիկը։ Վերջափակելով երթը, պայուսակը թափահարելով, նա փնթփնթում էր.

— Էլի ուշ ենք վերադառնում դպրոցից... Գնդակ խաղալ անգամ չես կարող։

— Եվ իրոք։ Նրանք ապրում են խորդենու սովխոզում, իսկ հաճախում են Շենավանի միջնակարգ դպրոցը։ Ամռանը լավ է, իսկ ձմռանը, գարնանը կամ աշնանը, երբ անանցանելի ցեխեր են, դժվար է քայլելը։ Այս տարի գարունը չորային էր։ Մարտի կեսերին արդեն հալվել էր դաշտերի ձյունը և ապրիլի սկզբին ջերմություն էր հորդում օրվա ընթացքում տաքացած հողից,

# Սահմանը մոտ է



որը պատրաստ էր ծածկվելու թարմ, հյութալի խոտով։

Վաչիկը չէր հանգստանում...

— Ամեն օր դասերից հետո մի բան լինում է. կամ խմբակի պարապմունք, կամ ջոկատի հավաքույթ։

— Դե լռի՛ր, — սաստեց նրան առջևից գնացող Ֆրիդմանը։

— Ինչու՞, լռեմ...

— Չգիտե՞ս... Սահմանը մոտ է։

Վաչիկը խոժոռվեց, պայուսակով խփեց ծնկին։ Ո՞ւր է, թե մոտ է... Այստեղից նույնիսկ չի էլ երևում։ Ճիշտ է երևում են, ինչպես սահմանապահներն են ասում՝ «սահմանակից» կողմի լեռները։ Բայց նրանք այդպես երևում են նաև Երևանից։ Վաչիկը մտածեց. լա՜վ կլիներ ապրել ուղիղ սահմանին մոտ գտնըվող գյուղում։ Ա՛յ, այն ժամանակ պետք կգային «Հետախուզիչ» խմբակում ձեռք բերած գիտելիքները։ Ով բռներ-չբռներ, բայց ինքը անպայման կբռներ սահմանը խախտողին։ Իսկ այդ մշտական «սահմանը մոտ է» նախազգուշացումները նրա վրա չեն ազդում։ Դրուժինայի պետը հաճախ զգուշացնում էր տղաներին.

— Գնում եք... Շուրջներդ լավ նայեք՝ սահմանը մոտ է։ Թշնամին խորամանկ է... Իսկ դուք ավելի խորամանկ պետք է լինեք։

Դպրոցում էլ, «Սահմանապահների պատանի բարեկամը» խմբակի պարապմունքների ժամանակ իրենց հետ զրույցներ անցկացնող ուղեկալի հրամանատարը պատվիրում էր.

— Հիշեցե՛ք, սահմանը մոտ է։

Սակայն Վաչիկն իր ողջ կյանքի ընթացքում երբեք չի լսել, որ սովխոզի շրջակայքում գոնե մի անգամ բռնած լինեն սահմանը խախտողի։

Հեռվից երևացին ավանի տների տանիքները։ Շուտով տանը կլինեն։ Պայուսակը թափահարելով Վաչիկը բարձր երգեց։

— Ջա՛նդ, — ընդհատեց նրան Հրանտը։

— Գժվեցի՞ր,— խուլ ձայնով հարցրեց Ֆրիդմանը։ Չե՞ս տեսնում։

— Ու՞մ... Ի՞նչը չեմ տեսնում։

— Տե՛ս, ջրանցքի մոտով երկու հոգի են գնում։

Վաչիկը նայեց ցույց տված կողմը։ Թխակապույտ մթնշաղի միջով զրուցելով քայլում էին քաղաքացիական շորեր հագած երկու հոգի։ Նրանք նման չէին մոտակա գյուղերում բնակվող մարդկանց։ Դե՛, ի՞նչ կա զարմանալու։ Գուցե քաղաքից են, եկել են գյուղ բարեկամների մոտ և հավանաբար կորցրել ճանապարհը։ Այդպիսի դեպքեր այստեղ շատ են պատահել։

— Պառկի՛ր, — կամաց, բայց տիրաբար հրամայեց Ֆրիդմանը։

Երեքը միասին ընկան հողաթմբի վրա և սկսեցին հետևել անծանոթների շարժումներին։ Ֆրիդմանը շշնջաց Հրանտին.

— Հասի՛ր գյուղ։ Հայտնի՛ր դրուժինայի պետին։ Զանգահարի՛ր ուղեկալ, իսկ մենք Վաչիկի հետ կհետևենք նրանց։

Վաչիկի շունչը նույնիսկ կըտրվեց։ Ֆրիդմանը նրանցից ամենամեծն է, և եթե նա է որոշել հայտնել ուղեկալ, ուրեմն դրությունը լուրջ է։ Վաչիկը տեսավ, թե ինչպես թփերի մի-

ջով, օձի պես ոլորվելով, սողաց Հրանտը։

— Կարծում ես սահման խախտողնե՞ր են,— հարցրեց նա Ֆրիդմանին։

— Հապա ովքե՞ր։ Նայի՛ր, թե ինչպես են իրենց պահում։

Զգուշությամբ շուրջը նայելով ու թփուտներում թաքնվելով՝ անծանոթները արագացնում էին քայլերը։ Ֆրիդմանն ու Վաչիկը հազիվ էին հասնում նրանց հետևից՝ կուզեկուզ ու փոսից-փոս վազելով։ Սակայն ահա անծանոթները կանգ առան մի մեծ քարի մոտ, խորհրդակցեցին, նայեցին աջ ու ձախ և, ոչ ոքի չնկատելով, ծոցագրպաններից հանեցին փոքր փաթեթներ ու, խոթելով քարի տակ, խոտով ծածկեցին։ Հիմա արդեն պարզ էր, որ դրանք սահման խախտողներ են։ Նրանք ինչ-որ բան պահեցին թաքստոցում։ Վաչիկի սրտի զարկերն արագացան։ Վերջապես իսկական սահմանախախտներ։ Միայն թե ձեռքներից բաց չթողնեին։ Արդեն մթնում էր։ Հանցագործների կերպարանքները դարձան անորոշ։ Վաչիկը մտատանջության մեջ ընկավ.

— Ի՞նչ պետք է անենք... Մթնում է։ Կգնան։

— Ավելի մոտիկից գնանք, հետևենք կրնկակոխ,— կամաց հրամայեց Ֆրիդմանը։

Եվ որպեսզի հակառակորդին աչքից բաց չթողնեն, տղաները արա՛գ-արագ թփից-թուփ, թըմբից-թումբ անցնելով՝ մոտեցան նրանց։ Վաչիկն ընկավ և արյունոտելու աստիճան չագռոտեց ձեռքը։

— Մի՛ նվա,— հրեց նրան Ֆրիդմանը։— Կամա՛ց։

Քրտնաթաթավ Վաչիկը աշխատում էր չշնչել, բայց անընդհատ վազելուց բարձրաձայն հևում էր։ Բայց ահա, վերջապես, այնտեղից, որտեղ գտնըվում է ուղեկալը, մեկը մյուսին հաջորդելով երկինք բարձրացան կարմիր հրթիռները։ Ուրեմն՝ ուղեկալը ոտքի է ելել «ի զեն» ահազանգի կոչով։ Ուրեմն՝ Հրանտըն արդեն ավանումն է և հայտնել է ուղեկալի պետին։

— Ապրես, Հրանտ,— միայն ասաց Ֆրիդմանը։

Սահմանախախտներն ավելի ու ավելի էին հեռանում։ Ահա, ուր որ է, նրանք կձուլվեն խավարին։ Վաչիկը սողաց դեպի Ֆրիդմանը։

— Բռնե՞նք։

— Ինչպե՞ս... Ինչո՞վ... Մատիտո՞վ, ի՞նչ է։ Նրանք երևի զինված են։ Վազիր սահմանապահներին ընդառաջ, ես նրանց մենակ կհետևեմ։

— Ես քեզ չեմ թողնի...— Հազիվ էր ասել Վաչիկը, բայց Ֆրիդմանը, ինչպես հատուկ է մեծերին, շշուկով ընդհատեց նրա խոսքը.

— Կրկնի՛ր հրամանը։

— Լսո՛ւմ եմ, վազել սահմանապահներին ընդառաջ։

Վաչիկն ամբողջ ուժով նետվեց ջրանցքի այն կողմը, որտեղ նրանք նկատել էին անծանոթներին։ Ամայի խավարը ծածկել էր ճանապարհն ու ամբողջ շըրջապատը։ Վաչիկը վազում էր, սահում, ընկնում՝ կողմնորոշվելով ավանում հետզհետե վառվող կրակներով։ Քիչ էր մնում սիրտը պոկվեր կրծքից ու դուրս թռչեր։ Փոքր-ինչ շունչ առնելու համար կանգ առավ։ Հեռվից լսվում էր մոտեցող շների հաչոց, ձիերի դոփյուն։ Նա մոտ գնաց։ Շուտով խավարի միջից դուրս եկան մի քանի ձիավորներ ու կանգնեցին Վաչիկի առաջ։

— Որտե՞ղ են,— հարցրեց պետը։

— Այնտեղ,— ձեռքով արեց Վաչիկը՝ ցույց տալով այն կողմը, որտեղից ինքը եկել էր։

Ձիավորներից երեքը սլացան մատնանշված ուղղությամբ, երկուսը մնացին Վաչիկի հետ։ Տղան հիշեց թաքստոցը։

— Նրանք քարի տակ ինչ-որ բան պահեցին։

— Որտե՞ղ է քարը... Ցույց տուր։

Երբ նա գնում էր դեպի քարը, նկատեց, որ արդեն ամեն կողմից փայլատակում էին ավանային դրուժիննիկների կրակները։ Սերոնք շրջափակում էին թշնամու ճանապարհները։

Վաչիկի ցույց տված քարի տակից դրուժիննիկներն հանեցին



Նկ. ՄԻՀՐԱՆ ՍՈՍՈՅԱՆԻ

անջրանցիկ շորի մեջ փաթաթված արտասահմանյան երկու անձնագիր և այլ փաստաթղթեր։

Տագնապ հայտարարվելուց երկու ժամ հետո, սահման խախտողները բռնվեցին։

Մի շաբաթ անց, Շենավանի միջնակարգ դպրոցում պիոներները կանգնեցին հանդիսավոր տողանի։ Հանդեսին ներկա էին



# ԳՆՈՒՄ ԵՄ ԼԵՌՆԵՐԸ

*ՌՈՒԶԱՆՆԱ ԱՐԱՄՅԱՆ*

*Սարում շները կարծես գարնան ամպրոպաբեր ամպ կուլ տված լինեն, բամբ ու խրոխտ են հաչում և առավոտ վաղ հոտի հետ գնում ու երեկոյան վերադառնում են։ Նրանք մութն ընկնելուն պես անականջ, պղպեղածև մեծ գլուխները թաթերի մեջ առած՝ պառկում են փարախի մոտ ու կես-քուն, կես-արթուն հետևում ոչխարներին։ Սարում խոտը կարճ է ու խիտ, մրջյունններն այնտեղ թերևս ուսով խոտարմատները մի կողմ են հրում ու նոր առաջանում։ Ջյունածածկ գագաթից ցած, լեռան ստորոտում խոտը բարձր է ու ծաղկաշատ, և մեղուների ու ճանճերի միալար բզզոցը ասես թանձր գործված շղարշ լինի, այնքան թանձր, որ մեջը կարող ես լույս քամել։*

*Սարում իմ ձայնն էլ փոխվեց։ Հովիվների նման բղավում էի. հե՛յ, հե՛յ։ Կանչս ծորից-ձոր էր թռչում, քարից-քար, ու ես ամպրոպաբեր ամպ կուլ տվածի նման, բառ ասելու փոխարեն, ճայթում, որոտում, գոգռում էի։ Սարում երևի ականջին բան չեն ասում, զաղտնախոսություն չկա, և ոչ ոք մեկը մյուսին չի բամբասում, իսկ գիշերները աստղերն այնտեղ այնքան խիտ են, որ երկինքը կարծես աստղածակերից սարքած մաղ լինի, և ամպերն էլ՝ այնքան մոտ, որ ափով կարող ես մի բուռ ամպ վերցնել, կախել ծնոտիդ տակ և դառնալ ալեհեր մորուքով ծերունի։ Կարծում եք այս ամենը հորինո՞ւմ եմ, ո՛չ, եղելություն է. ծնոտիցս ամպ էլ եմ կախել, խոսելու փոխարեն որոտացել եմ, ոչխարի հետ արոտ եմ գնացել ու վերադարձել, ականջ եմ դրել շների գայլահաչին ու հովիվների հետ «հե՛յ, հե՛յ» կանչել։ Ա՛յ, հենց դրանից էր, որ երբ սարից վերադարձա դպրոց, բոլոր ուսուցիչներն ասացին, թե ես Ջենով Օհանն եմ դարձել, խոսելու փոխարեն գոգռում եմ։ Սար գնալուց հետո միայն հասկացա Սասունցի Դավթին։ Որ ասեմ, չեք հավատա. մաղախն ուսիս շատ անգամ ոչխարի հետ բարձրացել եմ մինչև ձյան շերտերը և, ով գիտի, իմ հոտի՞ հետ որքան նապաստակ, աղվես և ուրիշ գազաններ եմ քշել բերել, ինչպես Դավիթն էր անում։*

*Մի անգամ, երբ գառներին գիշերելու էի բերում, շներն անհանգիստ հաչեցին ու հոտի միջից նապաստակներ, աղվեսներ փախան, հետո... Որ ասեմ, չեք հավատա, դրա համար էլ չեմ ասում։ Երևի այդ պատճառով էր, որ սասունցիները, ես էլ եմ սասունցի, ճիշտ է, փոքր, բայց սասունցի եմ, իմ անունը Ծուռ Դավիթ, Թլոլ Դավիթ դրեցին։ Չե՞ք հավատում, գնացեք Պճուկ պապի մոտ, նա հո կա, ապրում է Աշնակում. նա ձեզ ճիշտը կասի։ Ա՛յ, հենց նա էլ ասաց, թե ամեն ամառ ես պետք է սար ելնեմ, սարում լինեմ, որ Դավթի իսկական ժառանգը համարվեմ, կարողանամ «Ծափ պար» պարել, ծիրանի փող փչել։*

*Պճուկ պապի հոնքերը խիտ են, ու թե նա*

սահմանապահ զորամասի հրամանատարության ներկայացուցիչները, խորհրդնու սովխոզի և Շենավանի կոլտնտեսության ղեկավարները։ Հրահանգի համաձայն շարքից դուրս հրավիրվեցին երեք դպրոցական։ Սահմանապահ զորամասերի հրամանատար մայոր Կլիմովը կարդաց հրամանը.

— Զգոնությ:ւն և պետական սահմանը խախտողներին ձերբակալելու գործում սահմանապահներին ցույց տված օգնության համար շնորհակալություն հայտնել և արժեքավոր նվերներով պարգևատրել Շենավանի միջնակարգ դպրոցի պիոներներ Ֆրիդման Ասատրյանին՝ լուսանկարչական ապարատով ու «Սահմանապահների պատանի բարեկամը» կրծքանշանով, Հրանտ Հովհաննիսյանին՝ ժամացույցով ու կրծքանշանով, Վաչիկ Գրիգորյանին՝ ժամացույցով ու կրծքանշանով։

Շատ ժամանակ չի անցել այդ օրից։ Վաչիկը նույն ճանապարհով գնում է Շենավանի դպրոցը։ Ստեպ-ստեպ նայելով ժամացույցին ու շոյելով «Սահմանապահների պատանի բարեկամը» կրծքանշանը, ուշի-ուշով դիտում է շուրջը և այլևս չի ափսոսում, որ իրենց ավանը անմիջապես սահմանին կից չէ։ Այժմ նա գիտե, որ սահմանը մոտ է... Եթե դու իսկական պիոներ ես, հայրենիքի սահմաններն անցնում են քո սրտի միջով։

*ՄԻԽԱՅԻԼ ՕԼՋԻՆՆԻԿՈՎ*

*Թարգմ. Հ. ԳՈՒԼՅԱՆ*

մկրատով չկտրի, մազերը կգան, կկախվեն աչքերի վրա, և էլ ոչինչ չի տեսնի: Պնուկ պապը ինձ այնքան շատ պատմություններ է պատմել, որ եթե ես նորից պատմեմ, դուք բան ու գործ թո-



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

ղած՝ ամբողջ մի ամիս կլսեք և կզարմանաք: Բայց ո՞վ չի՞ կարելի մարդկանց գործից գցել:

Պնուկ պապը Ջենոնի որդին է: Նա իր մասին հենց այդպես է ասում՝ Ջենոնի որդի Պնուկ: Ջենոնը վաղուց է մեռել, մի ուրիշ սարի վրա է մեռել: Պնուկ պապն ասում է, թե այդ սարը մեր սարից չի երևում, հետո ասում է, թե ինքն էլ սարի վրա պիտի մեռնի, որ աստղերին, ամպերին, հովերին մոտ լինի, ու երբ սարվորները գան, լսի զառների մայուն, շների թանձր հաչոցներ, ու մեղրածաղիկների միալար, խիտ բզզոցի միջից լույս քամվի և կաթկթի իր շիրիմին: Պնուկ պապը շատ զարմանալի բաներ էր ասում, այստեղ՝ քաղաքում նրա ասածները տարօրինակ կթվան, իսկ այնտեղ, սարերում երբեք էլ զարմանալի չեն: Այնտեղ, սարերում ես էլ էի Պնուկ պապի ձևով խոսում, ամպ կուլ տվածի նման որոտածայն ու մի տեսակ անսովոր եղանակով, ես էլ էի այնտեղ ծիրանի փող փչում, «Ծափ պար» պարում ու զառներին գայլ ու գազան խառնած՝ Թլոլ Դավթի նման թափառում սարերն ի վեր, ձորերն ի վար: Չեք հավատո՞ւմ, գնացեք Աշնակ ու հարցրեք Պնուկ պապին, նա ձեզ ճիշտը կասի: Հետո նա ձեզ ցույց կտա այն երկու մեծ գամփռներին՝ Զանգիին և Զրանգիին, որ ինձ հետ ընկերացած սարից-սար էին շրջում: Հետո կասի, որ ես իմ ձեռքը նրանց երախն էի տանում ու նրանք անգամ չէին զռռում, շատ բան կասի Պնուկ պապը, բայց ժամանակ չունեմ, սար եմ ելնելու: Զառներն արդեն գնացել են, Պնուկ պապը վաղուց է այնտեղ, իսկ ես ուշացել եմ, դպրոցն երեկ արձակեցին, շտապում եմ, սար պիտի գնամ, ճամփի համար մի բանաստեղծություն եմ բերանացի արել.

Դեպի վեր, սարն ի վեր,
Անվեհեր զինվոր...

## ԱՄԱՌՆԱՄՈՒՏ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Ամառնամուտ է իջել հողին,
Պայծառ ու ջերմին ամառնամուտ,
Մեղմ օրորվում է լեռան կողին
Գարնան ծաղկունքի շղթան կապույտ:
Ելնում է քնից ցերեկը վաղ,
Սեգ կատարներին լույս է նետում,
Արևն արտերին, այգուն խաղաղ
Հասունություն է լուռ ավետում:
Հանդերն են ժպտում անձրևաթաց,
Սարում, անտառում տրտունջ չկա,
Հայոց արևի խնդումն առած՝
Բալն ու կեռասն են գնում շուկա:

Խնձորենին է ուրախ խորհում,
Արոտի բույրով հարբում է ձին,
Ամառնամուտն են մարդիկ օրհնում
Եվ սպասում են արտի հնձին:
Ժիր մանուկներն են կանչում իրար,
Խմբով գետափ են գնում նրանք,
Տնպահ մնացած մի չալ Բողար
Նստած քնում է արևի տակ:
Ծիծեռնակներն են ձագեր հանել,
Ուրախ իջնում են տանիքներին,
Լսիր ինձ, մանկիկ իմ զանգրահեր,
Չդիպչես նրանց խեղճ ձագերին:

# Ալեք պապի արագիլները



ԱՂՎԱՆԻ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մեր բակը բավականին մեծ էր, պարսպապատ, սրա ամբողջ երկարությամբ էլ ծառեր՝ թթենի, բարդի, ընկուզենի, մեջընդմեջ: Ծառերի այդպիսի դասավորությունը ես նմանեցնում էի զորաշարքի, պարսպապատ բակն էլ՝ ամրոցի:

Դե, եթե ամրոց էր, ուներ զորաբանակ, ուրեմն հրամանատար էլ պիտի ունենար, որը ղեկավարեր ամրոցի պաշտպանությունը, մանավանդ ցոգոլի ժամանակ:

Կուզենայի, իհարկե, իմ զինվորները լինեին խոսուն, շարժուն, լսել կարողանային իմ հրամանները ու կատարել: Բայց դե, ինչ արած, ամեն բան հո մարդուս ուզածով ու ցանկացածով չի՞ լինում: Այն էլ ՝բավական էր, որ ես հրաման էի արձակում. «Կրա՜կ», հետո վազում ցնցում էի, թթենին ու՝ կը՛տ-կը՛տ-կը՛տ, թութը թափվում էր գլխիս, ուսերիս, շուրջ-բոլորս, ու ես, մեր բակի համ ու հոտի հետ, բաղցրացնում էի բերանս:

Ահա այսպիսին էր մեր բակը ինձ համար: Իսկ Ալեք պապի համար՝ նրա գլխով անցած բոլոր դեպքերի ու անցքերի կանաչ վկան էր: Տրամադրությունը տեղը լիներ, ձեռքին գործ չունենար, կնստեր ու մտաբերելով կպատմեր, թե ո՛ր ծառը երբ են տնկել, ո՛վ, ի՛նչ նպատակով:

— Խոսքի օրինակի համար, այ էն թթամերը, տեսնո՞ւմ ես՝ էնպիսի մի ածղահան է, որ արջն իրա երկու թաթով դժվար թե գրկի:

— Արջն ինչո՞ւ պիտի գա հասնի Կոնդ, որ դեռ թթենու հետ էլ գրկվի, — դիտմամբ առարկում էի ես, ու պապը մատով թխկացնում էր քթիս:

— Խելքիդ զոռ մի՛ տուր, դպրավանքի վարդապետ, ամեն բան էլ կարող է պատահել. համ էլ ես խոսքի օրինակի համար եմ ասում, դու ականջ արա: Էդ թթամերը քո մեծ պապիկն է տնկել, որ իմ հայրն էր ու նմանապես՝ Ալեք: Իմ զինվոր գնալու տարին էր, մի բարակ, լղրճուկ թթամատ բերեց, թե. «Ալեք տղա, հրես տնկում եմ, մինչև սրա պտղակալելը որ չես վերադարձել, վա՛յ քեզ»:

— Ու վերադարձա՞ր...

— Հը՜մ, էն էլ ո՛նց: Դարբասից դեռ ներս չէի մտել, ոտքերիս տակ բռերով չոր թութ շաղ տրվեցին: Ափսոս եկավ: Ախր քանի՜ տարի էր, ես թթի երես չէի տեսել, իսկ էստեղ մեծ պապիկդ թափում էր ու թափում: «Հայրիկ, — ասացի, — ինչո՞ւ ես փչացնում, իմ ոտքերը թութ չեն ուտում»: «Քո թթենու առաջին պտուղն է, — ասաց, — էս նպատակով էի չորացրել, պահել: Դե որ անփորձանք վերադարձել ես, մատաղ լինի քո գալած ճամփին»:

Պապը ծխում էր, հաճույքով տնքում ու դարձյալ մի պատմություն, դարձյալ «խոսքի օրինակի համար»:

— Պակվելուս տարին էլ մի շիմշատ քլենի տնկեց. «Քո և Նուբարի բախտավորության վկան թող լինի, — ասաց, — բարով իրար հետ զորանաք, պտղավորվեք, աշխարհը լցնեք ձեր անուշ համ ու հոտով, ոռնաքքով»:

— Ինչո՞ւ, դու և Նուբար տատը հո բալ չէի՞ք, որ համով լինեիք...

— Որ ասում եմ վարդապետի գավազանի չափ էլ խելք չունես, — ծիծաղում էր պապը, — վերջը, էդ բալենին դեռ չէր պտղակալել, ծնվեց Բագրատը...

Բագրատն իմ հայրիկն էր, գնացել էր պատերազմ ու ո՛չ նամակ-կար, ո՛չ լուր: Ես նրան մրաքումս հայրիկ էի ասում, իսկ պապի հետ նրա մա-

սին խոսելիս՝ Բագրատ։ Պապն այդպես էր ուզում։

Պապ, իսկ Բագրատի համար ինչո՞ւ ոչ մի ծառ չես տնկել, — հարցնում էի ես, գիտենալով, որ պապը վրաս պիտի գոռա կամ էլ մռայլվի ու հանի թութունի քսակը։ Միշտ էլ այդպես էր լինում։ Իսկ ես վշտանում էի, բարկանում, վիրավորվում։ Ինչ մի մեծ բան էր, որ մի ծառ էլ նրա համար տնկեր ու երևի վերադառնար իմ Բագրատ հայրիկը։ Վշտանում էի ու գնում մեր բակի ամենահեռավոր անկյունը։ Այնտեղ երկու բարդի կային, շրջապատված պտղատու ծառերի խիտ շարքով։ Երբ մեր ծառերը կանաչում էին, կողքից նայելիս ինձ թվում էր, թե կանաչ ծով է իմ առջև ծփում ու բարդիների կատարներն էլ ծովից բարձրացած կանաչ աշտարակներ են։ Նայում էի ու մտածում, թե կարողանայի այսպես քայլել, քայլել կանաչ ծովի վրայով, հասնել բարդի-աշտարակներին ու նրանց բարձունքից նայել այն ճամփաներին, որոնցով գնացել էր Բագրատ հայրիկն ու չէր վերադառնում։ Կարող էի նաև մագլցելով բարձրանալ բարդիների կատարը, բայց պապիկն անխնայ ականջս կպոկեր։

Մեր բակում առհասարակ ոչ ոք չէր հանդգնի մոտենալ այդ բարդիներին, ու բոլորս էլ պապի խստությունը բացատրում էինք նրանով, որ բարդիներից մեկի կատարին արագիլի բույն էր։ Պապը, որ ընդհանրապես թռչունների նկատմամբ բավականին անտարբեր էր ու դրանցով զբաղվելը համարում էր կնոջ գործ, այս արագիլներին սիրում էր աչքի լույսի նման։ Շատ է պատահել, որ տեսել եմ նրան արագիլի հետ զրուցելիս։

Իջել է արագիլը ու ծառի տակ շրջում է։ Պապն էլ, ասես թե, թարխունի մարգում ինչ-որ բզբզում է, բայց աչքը զբաղված արագիլի կողմն է։ Շուրջն է նայում պապիկն ու համոզվելով, որ ուրիշը չկա, ինձ էլ չի տեսնում, քանի որ ես թփերի միջից եմ նայում, կամացուկ մոտենում է իր սիրելուն.

Բոլթա ես տալիս, հա՞։ Լավ ես անում։ Քայլի, թող ոտնախաղերդ մի քիչ բացվեն, ամբողջ օրը մի ոտի վրա կանգնած ինչ էլ դիմանում ես։ Է՜, էդպես է, ախբերս, գերդաստան պահելը, երեխա մեծացնելը դժվար է... Բայց որ պահում ես ու մեծացնում ու մի օր էլ ձեռքիցդ խլում տանում են, դրա՞ն ինչ կասես...

Արագիլը կարծես ինչ-որ բան էր ուզում ասել ու իր լեզվով ղլթղլթացնում էր։ Պապը մորուքի հետ խաղալով ականջ էր դնում ու էլի խոսում.

Էդ քո վերևներից ճամփերին էիր մտիկ տալիս, տեսա։ Հիմի խելքդ ի՞նչ է կտրում, կգա՞, թե... Չե՞ս իմանում... Ես դու ո՞նց եկար, քո ճամփեն էլ դժվար էր, բայց եկար, չէ՞... Բնավորվեցիր, հիմի էլ ճուտ ես մեծացնում... Հասկանում ես, ինչ եմ ուզում ասել...

Այսքան շատ բան էր ասում պապիկը, բայց ոչ ես էի հասկանում, ոչ էլ մանավանդ՝ արագիլը, թե նա ինչ էր ուզում ասել։

Արագիլները սովորել էին նաև մեր հնդկահավերի հետ վայելել նրանց հասանելիք եգիպտացորենը։ Այս կապակցությամբ երբեմն Նուբար տատն ու Ալեք պապը վիճաբանում էին։

— Դե լավ, էլի, էն խեղճ հնդուկները դրանց ձեռքից օր չեն տեսնում, — ասում էր տատիկը։ — Ո՞վ է իմացել, որ վիրունի հավերը գա տնականի գլխին նստի ու նրա ապրուստը խլի։

Պապը լռում էր մնում, ու տատիկը սրտնեղելով՝ գրոհը թեժացնում էր.

Կբռնեմ ոտները կկոտրեմ։

Պապը բթի տակ ժպտում էր, տատիկը վիրավորվում էր ու արագիլներին թողած՝ դառնում էր նրան.

— Լավ ես անում, Ալեք տղա, ծիծաղի՛ վրես, ծիծաղի՛, իմ տեղն է։ Ես հենց էն օրը դրանց պիտի հուշտ անեի, որ հիմի էսպես երես չառնեին։

— Այսինքն՝ ո՞ր օրը, — խորամանկ ժպիտը մորուքին խառնելով՝ հարցնում էր պապը։ — Դու իբրև իմանում ես, թե նրանք երբ են եկել էստեղ բնավորվել։ Իմանո՞ւմ ես, հը՞...

Հա, բան ու գործ չունեմ, էդ էլ պիտի միտս պահեի։

Հետո տատիկը փեշը եգիպտացորեն էր լցնում ու գնում էր բակի հակառակ ծայրը։ Ցաք էր տալիս դիտմամբ մեկ-մեկ, ամեն հատիկը մյուսից երեք մի կես մետր հեռու և կամացուկ կանչում էր.

Ջու-ջու-ջու, տատու հավքեր, դեսն եկեք, թևավորներ, ձեզ հետ չե՞մ...

Բայց տատու հավքերը, այսինքն՝ տատիս հնդուկ-





նկրը» իրենց ցանցառ խելքով մինչև կհասկանային, թե բանն ինչումն է, թևավորները լոք տալով վրա էին հասնում ու՝ փառավորվելս, կյանք: Միայն թե ուտում էին շատ դանդաղ, դժվարությամբ: Ախր արագիլի կտուցը շատ երկար է ու ասում են, որ եթե նա ամեն հատիկի համար կտուցը մի անգամ գետին զարկի, գլուխը կսկսի ցավել: Ճիշտը որ խոստովանեմ, ես դա ուրիշ ոչ ոքից չեմ լսել, տատիկս էր ասում ու շատ էլ մեծ հույս ունեի, թե արագիլները վերջը գլխացավ են ընկնելու: Իսկ արագիլները երևի արդեն վարժվել էին կուտ ուտելու այդ ձևին ու բոլորովին չէին զանգատվում գլխացավից:

Եվ այսպես, վաղ գարնանից մինչև ուշ աշուն: Երբ մոտենում էին չվերթի օրերը, պապն սկսում էր հատկապես կերակրել նրանց ու զարմանալի էր, որ Նուբար տատը չէր բարկանում, երբեմն նույնիսկ հիշեցնում էր.

— Ալեք, էն աստծու անմեղներին հո մոռահան չարեցի՞ր:

Չվում էին արագիլներն ու պապը տխրում էր, բայց եկեք տեսեք, որ տատիկն էլ էր տխրում:

— Էհ, ով է իմանում, հիմի ո՞ւմ դռներին են վզները ծռել: Մեղքս տալիս է, գիտես, Ալեք:

— Բա որ ասում եմ,— մտածկոտ ծոր էր տալիս պապը: Ախր դու չես իմանում, է՛, որ իմանաս...

Ի՞նչ պիտի ասեր պապը, որ չէր ասում ու ամեն անգամ խոսքի կեսին հանում էր թութունի քսակը:

Ասաց, երբ անկողին ընկավ: Մարտ ամիսն էր մոտենում, հայտնի բան էր, որ հին տոմարով քառասներկուսին, նորով՝ իննին վերադառնալու էին մեր արագիլները: Ծախտում չէր կարող լինել, գալու էին: Իսկ պապը, որ այդ բանը բոլորից լավ գիտեր, չգիտես ինչու, դարձել էր անհամբեր ու անկողնում հանգիստ մնալ չէր կարողանում: Ով դռնից մտներ, պապիկը տնքում կնստեր, հարցական կնայեր նրան:

Կգան, Ալեք ջան, կգան, ինչո՞ւ ես էդքան տապկվում, սիրտ էր տալիս տատիկը:— Քեզ լավ պահի, որ նրանց գալուն ոտի վրա լինես:

Իսկ պապը գնալով հալվում էր, հալվում ու արդեն մի բուռ ոսկոր էր մնացել: Էլ ինչ վեր կենալ, հասկանում էինք, որ գնում է մեր լավ պապիկը: Միայն աչքերը էլի նույն հույսով ու հարցական նայում էին մեզ:

Հոգուս մեջը պիտի անեմ, Ալեքսի տղա,- մի օր ասաց ինձ տատիկը:

Հոգուն ինչպե՞ս են մեջը անում, տատ,— չհասկացա ես:

— Արի, արի գնանք նստենք պապի կուշտը, ով գիտե, ինչ կպատահի: Համա տես, հա՜, ես ինչ անեմ, դու գլխով կանես: Չխոսես, ես գիտեմ, որ խոսեցիր, դուրս կտաս: Միայն գլխով կհաստատես իմ ասածը:

Գնացինք նստեցինք պապի կողքին: Տատը բռնեց նրա ձեռքը.

—Ալեք, Ալեք ջան... Բա չես ասում, ինչ է եղել, եկան, է, գիշերս:

Պապը սուր նայեց ինձ, տատին չնայեց, ինձ էր նայում՝ երկար, փորձող, հարցական: Չեմ հասկանում, թե ինչպես դիմացա նրա հայացքին: Բայց գլխով չարեցի, հենց ուղղակի վրա տվեցի.

— Ճիշտ է, եկել են, քիչ առաջ եկան... գիշերով, էլի...

Պապը հասկացրեց, որ ուզում է նստել: Օգնեցինք, բարձեր դրեցինք թիկունքին, նստեց, շունչը տեղը բերեց ու իր առաջվա առողջ, լիքը ձայնով հարցրեց.

- Նուբար, Բագրատիս գնալը մի՞տդ է:

Մի բուռ հող էլ դառնամ, մտիցս չի գնա,— հառաչեց տատիկը:

— Հա, էդպես է,— հաստատեց պապը:— Աշխարհն արար էդ օրը, էդ ժամանակները մտքիցս չի հանելու: Զարքի չարությունը մոռահան արեցիր, նա առավել չարագործ կդառնա... ուրեմն էդպես, Բագրատս գնաց Թթահամին, քեզ էլ Ալեքսուս հետ ճամփեցի Աշտարակ, ասի գնաս միաժամանակ աղջկադ մոտ, սիրտդ բացվի: Էհ, ես էլ մնացի տան ու տեղին պահապան: Միտքդ է: Ու, գիտես, էլի, աշխարհը գլխիս մթնել էր, ցերեկը ուրբա տակս չէր ծալվում, գիշերը գլուխս բարձին չէր մնում: Մտամոլոր թափառում էի ու թափառում: Մի օր էլ լուսաբացի մոտ ելա բակ, տես-

նեմ էս մեր բարդիների կողմից ղժղժոց է գալիս, թևերի շափշափյուն։ Ի՞նչ պիտի լինի, տեր աստված, մտածում եմ։ Մոտեցա, ու մի զարմանք բան՝ երկու արագիլ թառել են բարդու կատարին ու խլշկոտելով ղժղժացնում են։ Իմ ոտնաձայնից մի թևթև թիռ եղան ու էլ ետ իջան նստեցին։ Նրանք վերևում թառել ճռճռում են, ես ցածում կանգնել միտք եմ անում, թե սա ինչ բան է։ Ախր եկողն ամառ էր, էդ պահին անբուն արագիլ չէր կարող լինել, ամեն մեկն իրա բնի վրա պիտի լիներ, իրա ձագ ու ձվի հետ։ Ու մեկ էլ միտքս լուսավորվեց։ Է՜, ջուրը քեզ տանի, ասում եմ ինքս ինձ, ախր կռի՞վ է, պատերա՞զմ, աշխարհը կրակի բերանն է, ի՞նչ ես իմանում, որ գերմանու կրակը չի սրանց տեղահան արել ու գցել երկրե-երկիր։ Ու եթե կրակի ծուխը կտրելով հենց ուղղակի մեր բակն են ընկել, մեր բարդուն ապավինել, դրա մեջ էլ մի խորհուրդ կա՝ Բագրատիս պատգամաբերն են, նրա կողմից են եկել։ Սիրտս ուրախությունից ճխաց, բթոցն առա շուլալվեցի ծառին ու դրանց համար բույն սարքեցի։ Ես ուխտ արեցի՝ թե մնացին ու բնավորվեցին, տղեն կգա, թե չէ ու... — Պապը զվարթ նայեց մեզ, մորուքի վրա թույլ մի ժպիտ երևաց. — Մնացին, չէ՞, Նուբար ջան, բնավորվեցին, քանի՜ անգամ ձագ են հանել ու թռցրել... Հիմի էլ... ասացիր, որ իրրև եկել են... Չե՞ն եկել, դեռ երեք օր կա նրանց գալուն... Հոգուդ մեղք արեցիր, դե, դու էլ պիտի լինի՝ գնացողին քաղցր խոսքով են ճամփու դնում, մխիթարանքով, կարգ է։ Հիմի լսիր, ինչ եմ ասում։ Արագիլները կգան, ինչ չմտածես. [illegible]։ Ու Բագրատս էլ կգա, սիրտդ պինդ պա[illegible] ու հավատա։ Բանին որ սրտով հավատաս ու սպասես, կկատարվի, չի կարող չկատարվել։

...Արագիլներն իրոք եկան, իսկ պապն արդեն չկար։

Հետո՞, կհարցնեք դուք։

Հետո՝ ոչինչ։ Բագրատ հայրիկը դեռ չի վերադարձել։ Ուրեմն էլ ինչո՞ւ պատմեցի այս ամենը...

Ինչո՞ւ... Չգիտեմ, ճիշտ եմ, թե սխալ, բայց այնպես եմ կարծում, որ մարդը միշտ էլ մի լավ ու գեղեցիկ երազ պիտի ունենա, նվիրական մի սպասում և հավատ դրա իրականացմանը։ Իսկ երբ հավատում ես, դժվարը հեշտ է թվում, ծանրը՝ թեթև։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ԲԿԼԻԿԸ

ԱՍՏՂԻԿ ԹԵՎԱՆՅԱՆ

Տեսե՛ք, տեսե՛ք Ալիկին,
Մեր այս բկլիկ բալիկին։
Մի աթոռ է մոտ տարել,
Ինքն էլ վրան է թառել,
Պահարանն է քրքրում,
Կոնֆետներ է դուրս բերում։
Իսկ աթոռը ոտքի տակ
Ճռճռում է. «Ա՛յ անկարգ,
Բավական չէ՞ քրքրես,
Ինձ ոտքիդ տակ տրորես...
Հենց նոր կերար, ա՛յ անխիղճ,
Քույրդ էլ ուտի թող մի քիչ։
Կամ թե մեր տուն որ հյուր գա,
Մայրդ նրան էլ ի՞նչ տա»։
Բայց Ալիկի ի՞նչ պետքն էր,
Ուշքն ու միտքը կոնֆետն էր...
Ու աթոռը բարկացավ,
Ոտքի տակից դուրս պրծավ,
Թրը՛մփ, Ալիկն ընկավ վար...
Դե, թող մեկ էլ բարձրանար։

# ԾԻՏԻԿԻ ՀՈԳՍԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Գյուղ էր թռել ծիտիկը,
Այնտեղ շատ էր հատիկը,
Համ էլ ամռան կանաչ օր,
Շոգ քաղաքում ի՞նչ կար որ։
Շատ չափչփեց հանդ ու արտ,
Շատ ճաշակեց որդ ու սարդ,
Մինչև եկավ աշունը.
Ծիտը հիշեց իր բույնը.
— Տուն-տեղ ունեմ քաղաքում,
Ի՞նչ եմ անում գյուղակում։ —
Թռավ՝ ուրախ ծափ տալով,
Թևիկները թափ տալով։
Հետքն էլ չկա իր հին տան,
Ամենուրեք կիր ու քար
Ու մեծ մի շենք, ոնց որ սար։
— Վա՜յ ինձ, վա՜յ ինձ,— ծիտն ասաց,—
Ի՞նչ եմ տեսնում աչքով բաց,
Ո՞ւր է տաքուկ իմ բույնը,
Ո՞րտեղ առնեմ իմ քունը,
Ո՞ւմ դուռն հիմի ծեծեմ ես

Ո՞ր կրակը ընկնեմ ես...
— Լսիր,— ասաց մի այլ ծիտ,—
Ո՞ւր ես լալիս, ա՛յ անմիտ,
Ինչո՞ւ ընկնես կրակը,

Արի թռչենք պուրակը.
Այնտեղ և՛ բույն կունենաս,
Ե՛վ խաղաղ քուն կունենաս։
Մանուկները մտերիմ
Ձեն մոռանում ծտերին,
Նոր-նոր բներ են սարքում,
Հոգս ու ցավից մեզ փրկում.



# ՖԱՈՒՍՏԻՆՈ

ԼՈՒԱՆԴԻՆՈ ՎԻԵՅՐԱ
(Փորթուգալական գրող)

Հիմա ես ձեզ կպատմեմ Ֆաուստինոյի պատմությունը: Շատ բանի ականատես եմ եղել, որոշ բան էլ տղան ինքն է պատմել:

Նրա անունը Ֆաուստինո էր, Ֆաուստինո Անտոնիո: Ամբողջ օրը նա հանում էր գլխարկը, բացուխուփ անում վերելակի դուռը, նորից հանում գլխարկը, նորից բացուխուփ անում վերելակի դուռը...

— Բարի լո՛ւյս, սինյո՛րա:

— Խորապես շնորհակալ եմ, սինյո՛րա:

Տունը ընդամենը երեք հարկ ուներ: Բայց լիքը երեխաներ էին, որոնք ամեն օր վերելակի մեջ չարություն էին անում: Իսկ պատասխան պետք է տար Ֆաուստինոն:

— Ինչ է, դու չե՞ս տեսնում, քիչ էր մնացել երեխաս ջարդուփշուր լիներ: Ինչի՞ համար ես տնկվել այստեղ: Իզուր փող ես ստանում: Եթե տղայիս որևէ բան պատահի, ես քեզ ցույց կըտամ...

Երեխան լեզու էր հանում, իսկ Ֆաուստինոն ժպտում էր: Նա միշտ ժպտում էր: Ժպտալը դարձել էր նրա սովորությունը: Նման աշխատանքի դեպքում ուրիշ կերպ չես կարող...

Մի անգամ նա որսաց չարաճճիներից մեկին, դուրս քաշեց վերելակից և տարավ մոր մոտ: Եվ ի՞նչ: Երեխան գանգատվեց, իսկ սինյորան սպառնաց.

— Մեկ էլ նեղացնես տղայիս՝ չես մարսի: Կգնամ տանտիրոջ մոտ՝ գրասենյակ, և քեզ դուրս կշպրտեն փողոց: Քեզանից չե՛ն վախենա, սևադե՛մ սատանա:

— Սատանա՛,— կրկնեց երեխան՝ լեզու հանելով:

Ֆաուստինոն ժպտաց: Նա միշտ ժպտում էր:

Բայց երբ հաջողվում էր գտնել ազատ րոպե, նա նստում էր փոքրիկ սեղանի մոտ և կարդում... Երկրաչափություն... աշխարհագրություն... կամ բաց էր անում ընթերցարանը: Կարդացած անսովոր բաներից նրա գլխում խառնվում էր ամեն ինչ, աչքերն ավելի լայնանում էին:

Ֆաուստինոն պատրաստվում էր չորրորդ դասարանի քննություններին:

— Հավասարասրուն եռանկյունի կոչվում է այն եռանկյունին, որի...

— Հեյ դո՛ւ, քեզ այստեղ նստեցրել են, որպեսզի դո՞ւռ բանաս, թե՞ դաս սովորես:

— Ներեցե՛ք, սինյո՛րա, ես չնկատեցի ձեզ...

Երես առած մի երեխա լեզու էր հանում:

— Բո՛բի, Բո՛բի, թյո՛ւ, Բո՛բի...

Իսկ Բոբին երրորդ հարկի պեպենոտ աղջկա շունն էր:

— Բելի՛տա, արի դասերդ սովորիր:

Աղջկա մայրն էր պատշգամբից կանչում: Բայց պեպենոտ Բելիտան շարունակում էր զբոսնել շան հետ: Բոբին ազնվացեղ շուն էր, նա պետք է զբոսներ:

Ֆաուստինոն լսում էր սինյորայի ձայնը և ժպտում: Ապա նորից խորասուզվում էր գրքերի կախարդական աշխարհը, հրաշալի մի աշխարհ, որի նմանը երազում էլ չէր տեսել: Ծաղկող քաղաքներ... գեղեցիկ ու արտասովոր երկրներ...

Բայց, ավա՜ղ, նա աշխատանքի մեջ էր: Սպիտակամորթ կառավարիչը նրան մեկ անգամ արդեն զգուշացրել է: Երկրորդը չի լինի:

— Այսօր էլ չես ջրել մարգախոտն ու ծաղկաթմբերը: Ծաղիկները բոլորովին թառամել են: Ինչի՞ համար ես ամսավարձ ստանում: Սովորելը քե՛զ համար չէ, դրա հետ դու գործ չունես: Աշխատի՛ր, աշխատի՛ր: Դեռ պետք է աստիճաններն էլ լվանաս:

Երկրաչափության համար այսօր արդեն ժամանակ չի մնա... Ուսուցչուհին նորից կնախատի իրեն: Ջի հավատա, որ Ֆաուստինոն ժամանակ չունի: Կառաջարկի հեռանալ դպրոցից:

Դե՛, քե՛զ տեսնեմ, Ֆաուստինո, գործի՛ կպիր: Նախ՝ ծաղիկները: Նա շատ էր հավանում ծաղկաթմբերի վառվռուն ծաղիկները: Ամենից լավ սովորում էր բնագիտություն: Այնտեղ ամեն ինչ իր համար պարզ էր:

Ֆաուստինոյին ծաղիկները միշտ դուր էին գալիս: Նրան դուր էր գալիս նաև Մարիան: Աղջիկն աշխատում էր ծխախոտի ֆաբրիկայում: Առավոտները գործի գնալիս՝ Մարիան երբեմն գալիս էր նրա մոտ և հիացած նայում Ֆաուստինոյին, որ սպասավորի զգեստը հագին շատ լուրջ կանգնած էր լինում վերելակի կողքին: Մարիան վախով ու զարմանքով էր նայում, թե ինչպես է վերելակը բարձրանում, երբ Ֆաուստինոն սեղմում է էլեկտրակոճակը:

Ֆաուստինոն սիրում էր ծաղիկներ: Նա խնամքով ջրում էր այդ ծաղիկները: Մի անգամ պոկեց դրանցից մեկը և երանությամբ շշնջաց.

— Ցողո՛ւն, ծաղկաբաժա՜կ, ծաղկապսա՜կ...

— Անամոթ, քանի՞ անգամ եմ ասել, որ այդ ծաղիկները դու պետք է միայն ջրես: Դրանք այս տան տիկինների համար են: Սպասիր, ես քեզ փողոց կշպրտեմ: Քո փոխարեն մարդ կգտնենք: Ասացե՛ք, խնդրեմ, ծաղիկնե՛ր է հոտոտում: Դրանք քո կեղտոտ ձեռքերի համար չեն: Շո՛ւտ, գնա այգին ջրիր, հետո աստիճանները լվա: Հայդե՜...

Ֆաուստինոն չժպտաց: Կառավարիչի խոսքերը

Համբոն ու Գիքորը

ՄՀԵՐ ՆԱԶԱՐՅԱՆ
*Սպիտակի շրջան, գ. Թափանլի. 11 տարեկան*



**ՄԵՐ ՊԱՏԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՂՆԵՐԸ**

# ՔՈՒՅՐԻԿԻՍ ԾՆՈՒՆԴԸ

Մոտենում էր քույրիկիս ծննդյան օրը։ Մայրիկս պատվիրել էր այդ օրերին ձեռք չտալ նրան, որովհետև ես ամեն օր մի ինչ-որ առիթով ծեծում էի քրոջս։ Երեկ էլ այնպես քաշեցի նրա հյուսերից, որ լաց եղավ։ Բայց որքան որ ծեծում եմ նրան, այնքան էլ սիրում եմ։ Ու իմ մեջ առաջացավ քրոջս նվեր գնելու ցանկություն։ Այդ մասին ես քրոջս ոչինչ չասացի, այլ խորհրդակցեցի միայն մայրիկիս հետ։

— Լավ ես մտածել։

Ես ուրախացած նորից հարցրի.

— Իսկ ի՞նչ գնեմ, մայրիկ։

– Մի՛ զայրացրու և մի՛ ծեծիր քրոջդ, դա կլինի քո ամենալավ նվերը։

«Ոչ,— մտածեցի ես,— այնուամենայնիվ հարկավոր է մի նվեր գնել»։

Հայրիկի տված դրամները հավաքել էի և արդեն ունեի երկու ռուբլի։ Ես առանց ժամանակ կորցնելու վերցրի դրամս և դուրս եկա տնից ու քիչ հետո վերադարձա՝ մի փաթեթ ձեռքիս։

Մյուս օրը քույրիկիս ծննդյան օրն էր։ Մեր տանն էին հավաքվել ազգականներ, բարեկամներ, ինչպես նաև քրոջս ընկերուհիները։ Ես հաճախ ինձ վրա էի զգում քրոջս ժպտուն հայացքը։ Այդ պահերին ամեն կերպ ցանկանում էի թաքցնել դեմքս նրա հայացքից։ Զգում էի իմ սխալը։ Նա շարունակում էր նայել ինձ, կարծես ինչ-որ բան էր ուզում ասել։ Ինձ թվում էր, թե նա դեռ զայրացած է ինձ վրա։ Կընդունի՞ արդյոք նվերս, թե՞ ոչ, չէի կարողանում որոշել։

Ես այլևս չկարողացա համբերել։ Հանկարծ վազեցի իմ սենյակն ու,



Ծաղկած ծառեր

ՀԱՄԼԵՏ ՄՈՎՍԻՍՅԱՆ
Իջևանի շրջան, գ. Խաշթառակ, 6-րդ դասարան





ԱՐՄԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ
Երևան, 6 տարեկան

բերելով գնածս նվերը, հանձնեցի քրոջս։

— Շնորհավորում եմ,— ասացի։

Եվ հանկարծ, ես էլ չգիտեմ, թե ինչու շփոթվեցի, չէի կարողանում նրան նայել։ Դեմքս այրվում էր տաքությունից։ Իսկ երբ հայացքս բարձրացրի, քույրս նորից ժպտում էր։ Ես շփոթված դեռ շարունակում էի կանգնած մնալ սենյակում։ Բոլորը ծափահարում էին։ Հանկարծ... հանկարծ ես նրա աչքերի մեջ նկատեցի արցունքի մանր կաթիլներ։ Նա ժպտում էր, բայց չէր կարողանում թաքցնել հուզմունքը։ Նրա վառվռուն աչքերը կարծես ներում էին ինձ, ներում էին իմ բոլոր արարքները։

Ես այդ պահին ա՜յնքա՜ն, այնքա՜ն սիրեցի նրան, որ հուզմունքից չկարողացա ասել՝ ներիր, իմ լավ քույրիկ։

ՊԵՏՐՈՍ ԴԵՄԻՐՃՅԱՆ
Երևան, Րաֆֆու անվան դպրոց, 9-րդ դասարան

## ՍԵՎԱՆ

Ծփում ես դու, կապույտ Սևան,
Ալիքներով քո փրփրադեզ,
Ու սեգ լեռներն իմ Գեղամա
Ծով կարոտով նայում են քեզ։

Ինչպես ուռին թեքված առվին,
Առավոտից մինչ իրիկուն
Նայում եմ ու լսում լուին
Ջինջ երգերը քո զրնգուն։

Կապուտակ ես ինչպես երկինք,
Ինչպես աչքերն անեղ Տորքի,
Եվ մաքուր ես ինչպես հոգին
Մեր նախահայր ազնիվ Հայկի։

Ծփա՜ դու միշտ, իմ ջինջ ծովակ,
Ու թող ծափ տա վարար Զանգուն,
Գիրկդ կգա կոհա՛կ-կոհա՛կ
Արփա գետը՝ երգով զնգուն։

ԿԱՐԻՆԵ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
Երևան, № 78 դպրոց, վեցերորդ դասարան

# ՃԻՉ՝ ԱՆՏԱՌՈՒՄ

Ամառը հյուր էինք գնացել գյուղ՝ քեռանց մոտ։ Գեղեցիկ է մեր գյուղի բնությունը. լայնատարած դաշտեր, ծաղկաբույր մարգագետիններ, անտառներ ու մրգաշատ այգիներ։ Իսկ քչքչան, սառնորակ աղբյուրները, աղմկոտ ձորակները…

Ամբողջ օրը լինում ես հրաշալի բնության գրկում, էլի չես հոգնում։

Առավոտը վաղ, որ արևը հանում է իր պուտնկը գյուղի դիմացի բարձր սարից, մենք՝ մի խումբ երեխաներ, շտապում ենք դեպի մոտակա անտառը, գետափի այգիները։ Մի անգամ էլ ես, մայրս և քեռակինս գնացինք մոշ հավաքելու։

Մեզ մոտ շա՜տ-շա՜տ է մոշը, մայրս նրանից համեղ մուրաբա է պատրաստում։

Բայց մոշահավաքի օրը պատահեց մի դեպք, որ չեմ մոռանա ամբողջ կյանքում։

Մենք տուն էինք վերադառնում ուրախ, բարձր տրամադրությամբ։ Քեռակինս հետաքրքիր բաներ էր պատմում անտառային դեպքերից, գազաններից…

Այդ պահերին մի տեսակ խորհրդավոր էր թվում անտառը, բայց ես չէի մտածում ինձ. ուրախ, ծիծաղելով ու ծաղիկների մեջ թռչկոտելով, մորս շուրջը պտույտներ գործելով՝ քայլում էի դեպի տուն։ Մեկ էլ մոտիկ, խոր ձորակից մի աղերսալի ճիչ լսվեց։ Մենք կանգ առանք։ Աղմուկը գնալով ավելի հուսահատական էր դառնում։ Քեռակինս պահանջեց ետ դառնալ, գնալ ուրիշ ճամփով։ Ես և մայրս միաժամանակ նայեցինք միմյանց, մորս դեմքին նկատեցի կարեկցանքի նշան։ Մենք իրար անբառ հասկացանք և… որոշեցինք գնալ դեպի օգնություն հայցողը։ Քեռակինս ակամա հետևեց մեզ։ Բայց, զարմանալի բան, քանի մոտենում էինք ձորակին, ձայնը բարականում էր, իսկ հետո իսպառ չքացավ։ Մայրս գտնում էր, որ հավանաբար երեխա էր, լացել-լացել ու հոգնելուց քնել է։

Մենք երեքով սկսեցինք փնտրել կանաչ թփերը, խոտառատ մարգերը, բայց ոչինչ չգտանք։

Վերադարձին հանդիպեցինք կոլտնտեսության այգեպանին և խնդրեցինք նրան՝ շարունակել որոնումները։

Երեկո է՝ զով, մեղմ երեկո։ Տանը բոլորն էլ ուրախ կատակում են, իսկ ես, ամփոփված ինքս իմ մեջ, միայն անտառըն եմ հիշում, այն մանկական ձայնը՝ սրտակտոր, աղերսագին…

Հաջորդ օրը միայն հայտնի դարձավ, թե այն ինչ ճիչ էր անտառում։ Այդ եղնիկի ձագն էր ողբում իր մոր մահը, որ ընկել էր քարասիրտ որսկանի գնդակից…

ԳՈՀԱՐ ՄԱՐԳԱՐՅԱՆ
Երևան, № 106 դպրոց, 7-րդ դասարան



Դաշտային ծաղիկներ

ԳԵՎՈՐԳ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Ալավերդու շրջան, գ. Շնող, առաջին դասարան

# ՃԻՉ՝ ԱՆՏԱՌՈՒՄ

Ամառնը հյուր էինք գնացել գյուղ՝ քեռուս մոտ։ Գեղեցիկ է մեր գյուղի բնությունը. լայնատարած դաշտեր, ծաղկաբույր մարգագետիններ, անտառներ ու մրգաշատ այգիներ։ Իսկ քչքչան, սառնորակ աղբյուրները, ադմկոտ ձորակները...

Ամբողջ օրը լինում ես հրաշալի բնության գրկում, էլի չես հոգնում։

Առավոտը վաղ, որ արևը հանում է իր պռունկը գյուղի դիմացի բարձր սարից, մենք՝ մի խումբ երեխաներ, շտապում ենք դեպի մոտակա անտառը, գետափի այգիները։ Մի անգամ էլ ես, մայրս և քեռակինս գնացինք մոշ հավաքելու։

Մեզ մոտ շա՜տ-շա՜տ է մոշը, մայրս նրանից համեղ մուրաբա է պատրաստում։

Բայց մոշահավաքի օրը պատահեց մի դեպք, որ չեմ մոռանա ամբողջ կյանքում։

Մենք տուն էինք վերադառնում ուրախ, բարձր տրամադրությամբ։ Քեռակինս հետաքրքիր բաներ էր պատմում անտառային դեպքերից, գազաններից...

Այդ պահերին մի տեսակ խորհրդավոր էր թվում անտառը, բայց ես չէի մտնում ինձ. ուրախ, ծիծաղելով ու ծաղիկների մեջ թռչկոտելով, մորս շուրջը պտույտներ գործելով՝ քայլում էի դեպի տուն։ Մեկ էլ մոտիկ, խոր ձորակից մի աղերսալի ճիչ լսվեց։ Մենք կանգ առանք։ Աղմուկը գրնալով ավելի հուսահատական էր դառնում։ Քեռակինս պահանջեց ետ դառնալ, գնալ ուրիշ ճամփով։ Ես և մայրս միաժամանակ նայեցինք միմյանց, մորս դեմքին նկատեցի կարեկցանքի նշան։ Մենք իրար անբառ հասկացանք և... որոշեցինք գնալ դեպի օգնություն հայցողը։ Քեռակինս ակամա հետևեց մեզ։ Բայց, զարմանալի բան, քանի մոտենում էինք ձորակին, ձայնը բարականում էր, իսկ հետո իսպառ չքացավ։ Մայրս գտնում էր, որ հավանաբար երեխա էր, լացել-լացել ու հոգնելուց քնել է։

Մենք երեքով սկսեցինք փնտրել կանաչ թփերը, խոտառատ մարգերը, բայց ոչինչ չգտանք։

Վերադարձին հանդիպեցինք կոլտնտեսության այգեպանին և խնդրեցինք նրան՝ շարունակել որոնումները։

Երեկո է՝ զով, մեղմ երեկո։ Տանը բոլորն էլ ուրախ կատակում են, իսկ ես, ամփոփված ինքս իմ մեջ, միայն անտառըն եմ հիշում, այն մանկական ձայնը՝ սրտակտոր, աղերսագին...

Հաջորդ օրը միայն հայտնի դարձավ, թե այն ինչ ճիչ էր անտառում։ Այդ եղնիկի ձագն էր ողբում իր մոր մահը, որ ընկել էր քարասիրտ որսկանի գնդակից...

ԳՈՀԱՐ ՄԱՐԳԱՐՅԱՆ
Երևան, № 106 դպրոց, 7-րդ դասարան



Դաշտային ծաղիկներ

ԳԵՎՈՐԳ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Ալավերդու շրջան, գ. Շնող, առաջին դասարան

## ԱՇՈՒՆ

Դաշտը լցվել է ծիծաղով, երգով,
Աշունն է հարուստ գույներով, բերքով,
Եվ տերևները դեղին, ոսկեգույն,
Հյուսել են ասես մի մեծ ոսկետուն։

Աշուն ջան, աշուն, դու իմ ոսկետուն,
Դու ամբողջությամբ իմ փոքրիկ սրտում,
Քո այդ գույներին ո՞վ կդիմանա,
Ոսկով ես ծնվել, ոսկով էլ մնա։

ՍԱՌԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Էջմիածնի շրջան, Ներքին Թաթունարի,
4-րդ դասարան

## ՀԱՎԻԿԸ

Ա՛յ սիրունիկ,
Փոքրիկ հավիկ,
Ինչու՞ ես դու
Կանգնել հեռու:
Դե շու՛տ արի.
Տատը բարի
Ձայն է տալիս,
Կուտ է տալիս,
Իսկ դու կանգնել՝
Աչքդ փակել
Ու չես գալիս,
Ու չես գալիս:

ԼԻԼԻԹ ՊԵՏՐՈՍՅԱՆ
Արտաշատ, գ. Կանաչուտ

## ԲԺՇԿԱԿԱՆ

Ժամանակով Գերմանիայում ապրում էր մի գրավաճառ։ Մի օր ծանր գրքերից մեկը ընկնում է, նրա ոտքին և վիրավորում։

— Գնա բժշկի մոտ,— ասում է կինը։

— Ոչ,— առարկում է գրավաճառը,— եթե ես բժշկի մոտ գնամ, պետք է վճարեմ։ Կսպասեմ այնքան, մինչև որ մի բժիշկ գա իմ խանութը։ Այն ժամանակ նա ինձ անվճար կբուժի։

Հաջորդ օրը հանկարծ մի բժիշկ է գալիս գրախանութ և ընտրում է մի քանի գիրք։ Գրավաճառը ցույց է տալիս իր վիրավոր ոտքը։ Նայելուց հետո բժիշկը գրում է մի դեղատոմս, տալիս գրավաճառին և ասում է.

—Գնեցեք այս դեղերը դեղատնից և գրեք ձեր վնասված ոտքի վրա։ Մի



Անտառի բացատում

ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ
Սևանի շրջան, գ. Լճաշեն, 7-րդ դասարան

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

քանի օրից հետո դուք ձեզ լավ կըզգաք:

— Ես ձեզանից շատ շնորհակալ եմ, բժիշկ, ահա և ձեր գրքերը,— ասում է գրավաճառը:

— Ի՞նչ արժեն դրանք, — հարցնում է բժիշկը:

— 20 մարկ:

— Լավ, ուրեմն ես ձեզ չեմ վճարի,— ասում է բժիշկը:

— Ինչպե՞ս թե,— զարմանում է գրավաճառը:

— Երբ հաճախորդը ինձ մոտ, տուն է գալիս, բժշկական օգնության համար, նրանից վերցնում եմ 10 մարկ: Երբ ես ինքս եմ գնում նրա մոտ՝ դրա կրկնակին: Ես եմ եկել ձեզ մոտ, այնպես չէ՞: Ցտեսությու՜ն:

Գերմաներենից թարգմանեց ՎԱՐԴՈՒԹԵՐ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԸ

Արտաշատի շրջան, Մխչյանի միջնակարգ դպրոց



Ծովափին

(Քանդակագրոշմ թիթեղի վրա)

ՀՈՎՍԵՓՅԱՆ ԳՆՈՒՆԻԿ

Երևան, Շահումյանի անվան դպրոց, 3-րդ դասարան

## ՁՄԵՌ

Դրսում փափուկ ձյուն է գալիս,
Փաթիլ-փաթիլ, սպիտակ,
Ու իջնում է, նստում հանգիստ,
Ծառի վրա, ծառի տակ:

Դողդողում են ծառերը մերկ,
Հեռու՝ մեկը մյուսից,
Ու հյուսվում է ձմռան մի երգ՝
Փաթիլներից ու լույսից:

Դրսում փափուկ ձյուն է գալիս՝
Փաթիլ-փաթիլ, սպիտակ,
Ու իջնում է նստում հանգիստ
Ծառի վրա, ծառի տակ:

ԿԱԼԻՓՍԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երևան, Նալբանդյանի անվան դպրոց, 8-րդ դասարան

## ՊԱՏՐԱՆՔ

Կանգնել եմ ահա ես եղևնու տակ՝
Չորս կողմը ձմեռ, ճերմակ ամեն ինչ,
Նայում եմ վերև, կանաչ ճյուղերին,
Գարուն է թվում շուրջս՝ տաք ու ջինջ:
Ու կանաչի մեջ փայլփլող ձյունը
Ծաղկունքն է թվում այդ կանաչ ծառի,
Եվ ուրախ սրտով ես շշնջում եմ.
— Գարունն ի՜նչ շուտ է եկել այս տարի:

Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լեռնային Ղարաբաղ, Մարտունու շրջան, Ճարտարի միջնակարգ դպրոց

# ՄԵՐ ԳԵՏԸ

Այն մեր գետն է
Հանդարտ գալիս,
Արծաթագույն
Փայլեր տալիս:

Նա կանչում է,
Ձեռով անում,
Ոլոր-մոլոր
Սահում, գնում:

Եվ ջուր տալով,
Եվ շունչ տալով,
Գնում է նա
Մեր դաշտերով,

Որ կանաչեն
Մեր հանդերը,
Խինդով լցվեն
Մեր սրտերը:

ԼԵՆԱ ԿՈՒՅԱՆ

Գորիսի շրջան, Բայանդուրի
գյուղ., 3-րդ դասարան



Գարուն

ԽԱՉԱՏՐՅԱՆ ԱՐՏՈՒՏԻԿ
6 տարեկան
Շամշադինի շրջան, Բերդի № 1 մանկապարտեզ



Մեր բակը

ՔՆԱՐԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ
Սպիտակ, № 4 դպրոց, 2-րդ դասարան

# ԼՈՐՏՈՒՆ

Ամառ էր։ Ես նստել էի թթենու ստվերում և գիրք էի կարդում։ Հանկարծ քեռուս տղան՝ Հրաչիկը ճչաց.

— Լորտո՜ւ, լորտո՜ւ։

Ես վեր թռա տեղիցս և տեսա, որ ծաղիկների միջով գալարվում է մի լորտու։

Տատիկս ասաց.

— Մեղք է, թող գնա ու իր համար ապրի։

Իսկ Հրաչիկը իր ասածն էր պնդում.

— Չէ՛, պետք է բռնեմ։

Նա վազեց, որպեսզի հարմար բան գտնի լորտուն բռնելու համար։ Մինչև Հրաչիկը կգար, լորտուն մտավ քարերի մեջ։ Այդ օրը մենք այլևս չտեսանք նրան։ Մյուս օրը ես ու Ռուբիկը բարձրացել էինք ծառ՝ թութ ուտելու։ Հանկարծ տեսանք, որ մեր բակի Սամվելիկը ինչ-որ բան էր բռնել պատի միջից և բաց չէր թողնում։ Հանկարծ նա ուրախ բացականչեց.

— Լորտուն բռնեցի՜։

Իսկապես նա բռնել էր լորտուի գլխից և բաց չէր թողնում։ Մենք վրա հասանք, բայց լորտուն արդեն ազատվել էր նրա ձեռքից և անհետացել թփերի մեջ։ Սամվելիկը ուզեց նորից գտնել նրան, բայց ուշ էր։ Այնուհետև մենք մի քանի օր շրջում էինք պարտեզում՝ հույս ունենալով, որ լորտուն նորից կհայտնվի։ Անցան օրեր ու ամիսներ, բայց, իզուր, լորտուն չկար ու չկար։

ԱՐԱՄ ՍԻՄՈՆՅԱՆ

Երևան, Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոց, 4-րդ դասարան

## ՈՒՇ ԱՇՈՒՆ

Տերևն ընկել քամու բերան,
Հեծկլտում է առուն խուլ,
Ամպը՝ փետուր, փետրանման,
Ամպը՝ մոլոր, ամպը՝ լուռ։

Սարը ճերմակ գլխարկ դրեց,
Հոտը քաշվեց, եկավ գյուղ,
Դաշտով մենակ գայլը վազեց,
Սոված գայլը աներկյուղ։

ԱՆԴՐԱՆԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆ

Թալինի շրջան, Դավթաշենի 8-ամյա դպրոց, 3-րդ դասարան



Կովն ու հորթը

ՆԱՓՈԼԵՈՆ ՍԱՐԳՍՅԱՆ

Ջերմուկ, առաջին դասարան

## ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳԸ

Մայիս է, մայիս՝ խնդության ամիս,
Վարդեր են բուրում պարտեզում, դաշտում,
Քնքուշ ձայնով առվակն է երգում,
Գետակն ու առվակը ուրախ՝
Քրքջում, երգ են հյուսում,
Գարուն, քո մասին:
Մայր բնությունը զարթոնք է ապրում.
Մանուկների զվարթ ծիծաղն է
Ամենուր հնչում,
Ապատության աղավնիներն են
Երկնքում ճախրում
Եվ ամբողջ աշխարհին
Խաղաղություն ավետում:
Օ՛, մայիս, ապատության դու գուշակ,
Հավերժական ծաղիկներով
Զարդարված դու պայծառ ամիս,
Քո երգն եմ ես հյուսում՝
Գրչով իմ պատանեկան:

ԴԱՎԻԹ ՈՍԿԵՐՉՅԱՆ
Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 8-րդ դասարան

## ՔՈՒՅՐԻԿԻՍ

Ա՛յ դու Սուսիկ, իմ Սուսիկ,
Փոքրիկ, սիրուն իմ քույրիկ,
Արի լսիր մայրիկին,
Մի՛ տանջիր քո տիկնիկին:
Թե չէ նա կբարկանա
Ինչպես փոքրիկ մեր կատուն,
Դուրս կփախչի, կգնա
Ու էլ չի գա, չի գա տուն:

ՄԱՆՎԵԼ ՋԱԼԻԲԵԿՅԱՆ
Հրազդան, № 6 միջնակարգ դպրոց,
7-րդ դասարան

## ԱՇՈՒՆ

Աշուն է նորից,
Ուռենու ճյուղից
Մի տերև պոկվել,
Թռչում է ներքև:
Ուր որ է, քամին
Կիջնի կրկին,
Ոչինչ չի մնա
Ուռենու հագին:

ՍՈՍ ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ
Նախ. ԱՍՍՌ, Նախիջևանի շրջան, գյուղ Գեմուր



Ընկուզենի

ՆՈՒՆԵ ԱՍԱՏՐՅԱՆ
Երևան, 9 տարեկան



Արևածաղիկ

ԱՐՏԱԿ ԱՂԱԲԱԲՅԱՆ

Էջմիածին, Հ. Հովհաննիսյանի անվ. դպ. առաջին դաս.

# ԾԵՐՈՒԿԸ, ՔՈՒՐՔԸ ԵՎ ԽԱՐՈՒՅԿԸ

Ձմռան կեսին,
Պարկը ուսին,
Իտալացի
Մի գյուղացի
Շուրջը նայում,
Միտք է անում.
«Ա՜խ, երանի
Ունենայի
Ես մի տաք քուրք
Կամ թե մեկը
Վառեր այստեղ
Մի լավ խարույկ»...

Միտք է անում
Ծեր գյուղացին՝
Դողը սրտում,
Բեռը ուսին:
Թե չվառի ինքը խարույկ
Ու չգնի
Իրեն մի քուրք,
Ո՞վ կհիշի,
Որ այս ձորում՝
Քուրքի կարոտ,
Աղքատ ու մերկ
Կա մի ծերուկ:

ԹՈՒՆԻԿ ԹԱՄՈՅԱՆ

Հոկտեմբերյանի շրջան, Մարգարայի միջնակարգ դպրոց

# ԾԱՂԻԿԸ

Դաշտում տեսա մի ծաղիկ՝
Հոտավետ ու գեղեցիկ:
Ասի՝ ծաղիկ դու անուշ,
Եկ, քույր դարձիր ինձ քնքուշ:

— Ինչպե՞ս դառնամ ես քեզ քույր,
Քեզ պես աղջիկ սևաթույր,
Չէ՞ որ սնունդ եմ առնում
Մայր հողից ու զորանում...

Լավ է, մայր հողն ինձ պահի,
Քանի դառնամ ես թագուհի...

ՆԵԼԼԻ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Արտաշատի շրջ., Բաղրամյանի դպ., 7-րդ դասարան

# ՊԱՐՏԷԶԻՆ ՄԵՋ

Ընկույզի ծառին տակը
Կնվագեմ իմ երգը:
Շուրջս կժպտին կանանչ խոտերը,
Վրան պար կբռնեն թիթեռնիկները:
Թռչունները կերգեին
Իրենց զվարթ երգերին:
Բարդիի ծառին վրա
Թռչուններու բույն մը կա:
Մայր թռչունը մեջը բույնին
Կկերակրե իր ձագուկին:
Պարտեզին մեջ հետո տեսա
Աշխատասեր մրջյուններ կան:
Պաշար կկրեն, որ ձմռան
Ցրտին անոթի չմնան:
Աղբյուրին ջուրը կհոսի,
Առուները կկազմվին:
Պարտեզին մեջ կա ավազան,
Մեջը ձուկերը կլողան:
Ինչ սիրուն է պարտեզը,
Երբ մեջն է ավազանը:

ՀԱԿՈԲԻԿ ՅՈՒՍՈՒՖՅԱՆ

8 տարեկան, Հալեպ, Սիրիա

## ԻՄ ՏԻԿՆԻԿԸ

Մեծացել եմ, մեծացել ես
Ու գնում եմ մանկապարտեզ.
Խաղալիքներ ունեմ սիրուն,
Ե՛վ գրում եմ, և՛ նկարում։

Եվ մի տիկնիկ ունեմ սիրուն,
Որ ժպտում է անուշ-անուշ,
Այդ տիկնիկիս շատ եմ սիրում
Ու անվանել եմ Հայկանուշ։

*ԱՆԱՀԻՏ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

*Մեղրի, Ստ. Շահումյանի անվ. միջն. դպրոց*

## ԲԱԴԻՆ ՈՒ ԽՈԶԸ

*Մի օր բադը գետ գնալիս*
*Տեսավ խոզին աղբ ուտելիս,*
*Ապա դարձավ այսպես ասավ.*
*— Արի, ա՛յ խենթ, գետը մտիր,*
*Վրադ աղբ ու ցեխից մաքրիր։—*
*Խոզը անկուշտ,*
*Ասաց.— Անշուշտ,*
*Լավ է զուլալ ջուրը մտնել,*
*Բայց գետում աղբ ինչպե՞ս գտնել...*

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

*Երևան, № 82 դպրոց, 7-րդ դասարան*

## ԾԱՂԻԿ

Ա՛յ սիրուն ծաղիկ, դու ծորի միջին
Ինչու՞ ես այդպես գլուխդ կախել,
Նայի՛ր քո շուրջը, նայի՛ր, կակաչին,
Տե՛ս, նա ինչպես է աճել, բարձրացել։

Ա՛խ, ես հասկացա. ջուր չի հասել քեզ,
Ու թառամել են տերևները քո,
Հիմա կգնամ ջուր կբերեմ ես,
Որ դու շունչ առնես, լցվես բուրմունքով։

Որ դու կանաչես, դառնաս հոտավետ,
Կակաչի նման շուրջդ զարդարես,
Օրորվես կամաց մեղմ զեփյուռի հետ
Ու քո բուրմունքով մեզ խինդ պատճառես։

*ԱՆՈՒՇԻԿ ԽՈՅԵՑՅԱՆ*

*Սպիտակ, 5-րդ դասարան*



Հայկական բնանկար

*ԳՐԻՇԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*Երևան, Աղայանի անվ. դպ., 7-րդ դաս.*



# ԵՍ ՈՒ ԻՄ ՎԱԽԿՈՏ ՊԱՊԻԿԸ

Ամռան մի գեղեցիկ առավոտ գյուղից սայլակով եկավ պապիկս և ասաց.

— Թոռնիկս, եկել եմ, որ քեզ գյուղ տանեմ: Ես ու տատիկդ քեզ շատ ենք կարոտել:

Նախաճաշից հետո ես համբուրեցի մայրիկիս և պապիկիս հետ ճանապարհ ընկա: Գյուղ տանող ճանապարհը երկար էր, բայց շատ հետաքրքիր:

Մենք տեղ հասանք ուշ երեկոյան: Տատիկը, դռան առաջ կանգնած, մեզ էր սպասում: Նա համբուրեց այտերս և ասաց.

— Ինչքա՜ն մեծացե՜լ ես, Թոռնիկս: Դու շուտ իջիր սայլակից: Ես քեզ համար համեղ կարկանդակներ եմ թխել:

Ես ու պապիկը շատ հոգնած էինք և ընթրիքից հետո պառկեցինք քնելու:

Առավոտյան ինձ արթնացրեց շան հաչոցը: Իսկույն վեր թռա անկողնուց, արագ հագնվեցի ու վազեցի այգի:

Բակում հանդիպեցի Շառո շնիկին՝ իմ վաղեմի բարեկամին: Նա ողջունում էր ինձ՝ թափահարելով բրդոտ պոչը:

Հետո տեսա ձիուկին, երկար ականջներով իշուկներին և կովին:

— Ռի՜լկա,— ուրախացած բացականչեցի ես և մոտեցա ձիուն:

Ձին թափահարեց ականջները և շարժեց գլուխը: Իսկ հետո սկսեց նայել ինձ իր սև ու մեծ աչքերով: Ես շոյեցի նրա պարանոցը, արձակեցի կապը և թռա մեջքին: Ռիլկան պոկվեց տեղից և մեծ արագությամբ առաջ նետվեց: Հանկարծ դուռը բացվեց և երևաց պապիկը:

— Ի՞նչ սատանա է էլի մտել մեջդ,— գոռաց նա,— կընկնես, գլուխդ կջարդես:

Պապիկը կանգնեցրեց Ռիլկային, ինձ ցած իջեցրեց և ներս մտավ:

Քիչ հետո բացվեց ախոռի դուռը, և երևաց խոզուկի մեծ գլուխը: Խոզուկն սկսեց վազվզել մեկ աջ, մեկ ձախ: Ես թռա նրա մեջքին: Խոզուկն ինձ տարավ բանջարանոց: Պոմիդորի մարգում նա սկսեց փորփրել հողը՝ ես էլ նրա մեջքին: Այդ րոպեին ես նկատեցի պապիկին:



— Այդ ի՞նչ ես անում, անպիտան,— ասաց պապիկը և վազելով եկավ մեզ մոտ:— Ես ուզում եմ տեսնել այն սատանային, որը մտել է մեջդ:

— Դե լավ, լավ, մի՛ վախեցրու փոքրիկին,— գոռաց հարևաններից մեկը,— ոչ մի սատանա էլ չկա:





— Այդ ինչպե՞ս, դու կարծում ես այս հիմարությունները առանց սատանայի՞ են լինում։ Նա ինձ ստիպում է, որ ես քաշեմ ականջները և հետ ուղարկեմ իրենց տուն։



Ես որոշեցի այլևս չարություններ չանել։ Բայց հաջորդ օրը, երբ բակ էի դուրս եկել, մի էշ անցավ կողքիցս։ Ես բռնեցի նրա պոչից։ Էշը ինձ աքացի տվեց ու փախավ։ Երրորդ օրը ախոռի դռանը տեսա այծին և ուզեցի բռնել նրա երկար-երկար պոզերից։ Բայց նա ինձ պոզահարեց և գցեց ջրի տակառը։

Իսկ չորրորդ օրը, երբ զբոսնում էի, տեսա մի սալորի ծառ, որի կանաչ տերևների միջից ժպտում էին սալորները։ Ես վերցրի մի երկար փայտ և սկսեցի խփել ճյուղերին։ Պապիկը բարկությունից կարմրատակեց և ինձ փակեց սենյակում։ Ես սկսեցի թնգթնգալ. «Ազնիվ խոսք, ես այլևս երբեք չարություն չեմ անի»։ Մյուս օրը պապիկը որոշեց ուղևորվել հարևան գյուղը և ինձ էլ հետը տանել։ Պապիկը հեծավ մեծ ավանակին, ես էլ՝ փոքրին, ու ճանապարհ ընկանք։ Գյուղ չհասած՝ մենք հեռվից տեսանք գընչուների վրանները։ Մի քանի գնչու պարում էին կրակի շուրջը։ Գիշերային խավարի մեջ ես ու պապիկը շարունակեցինք մեր ճանապարհը։

Հանկարծ լսվեց պապիկիս սարսափահար ձայնը.

— Սատանա՜, սատանա՜։ Փրկե՜ք ինձ,— գոռում էր նա և խփում ավանակին։

Ես շրջվեցի պապիկիս կողմը և տեսա մի երկար պոչ, որը կախվել էր պապիկի մեջքից։

Ես էլ սկսեցի խփել իշուկիս կողերին։ Խավարի միջով սլանում էին մեր ավանակները։ Շուտով մենք գյուղ հասանք, երկարականջ ավանակները կանգ առան պայծառ լուսավորված ընթերցարանի առաջ։

Պապիկը էշից ցած թռավ և «վա՜յ-վա՜յ» գոռալով վազեց դեպի ընթերցարանը։ Ես էլ թռա գետին ու վազեցի պապիկի հետևից։

Իսկ երբ հասա երկար աստիճաններին, տեսա մի մազոտ կերպարանք։ Նա ցատկոտում էր աստիճանների վրա և մեկ էլ հոպ՝ թռավ մեջքիս։ Ես մի քիչ վախեցա և բղավեցի.



—Պապի՜կ, սա այն գնչու Ռամթշոյի կապիկն է, որը քեզ վախեցրեց ճանապարհին։

Բայց պապիկը կանգ չառավ։ Նա արագ վազում էր դեպի ընթերցարան։ Ես գրկեցի փոքրիկ կենդանուն։ Բայց այդ ժամա-

Նաև հայտնվեց Ռամթշոն և ինձանից վերցրեց կապիկը։ Այնուհետև ես ու Ռամթշոն մտանք ընթերցարան։ Պապիկի շուրջը շատ մարդ էր հավաքվել։ Իսկ նա դեռ հեվալով պատմում էր.

Ես երդվում եմ ձեզ, դա սատանա էր... Մենք գնում էինք և հանկարծ ճիշտ գերեզմանոցի մոտ, հոպ, մի քանի քայլ և մեջքիս... Բայց երբ լույսը բացվեց, նա չքացավ...

— Լսի՛ր ինձ, պապիկ,— գոռացի ես։ Դա Ռամթշոյի կապիկն էր, ոչ թե սատանա։

Ռամթշոն ժպտաց և վեր բարձրացրեց կապիկին։

— Դրանք փչոցներ են,— ասաց պապիկը բարկացած,— դա սատանա էր։ Դուք չեք կարող ինձ խաբել։

Բոլորը ծիծաղում էին և ձեռ առնում պապիկին։

— Ռամթշո, կապիկդ ինձ տուր, տանեմ տատիկիս,— համոզում էի ես։

Տուն վերադառնալիս ես կապիկին դրել էի ուսերիս և քայլում էի բոլորից առաջ։ Իմ հետևից գալիս էր Ռամթշոն՝ ձեռքերը դրած իր միակ ու կարկատած շալվարի գրպանները։ Ամենավերջից վազում էին երկար ականջներով ավանակները։

Ֆրանսերենից թարգմ.

ՍՈՍԱՆՆԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ

Երևան. Շիրվանզադեի անվան դպրոց







Ծաղկած ծառ

ԾՈՎԻՆԱՐ ՅԱՓՈՒՋՅԱՆ
Երևան, 7 տարեկան





Տրվում է անվճար՝ «Պիոների» 6-րդ համարի հետ

Հրթիռակայան

ՌԻՏԱ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Մարտունի, № 2 միջն. դպ., 4-րդ դաս.





Սևան

ԽԱՉԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Հրազդանի շրջան, գ. Լուսակերտ, 8-րդ դասարան





խոցոտեցին նրա հոգին։ Ծաղիկները ոչ ոքի չեն պատկանում, այլ բոլորի համար են։ Հողն է նրանց սնուցում։ Եվ վերջապես, ծաղիկների համար միևնույն է՝ ով է իրենց ցանում ու մշակում՝ սպիտա՞կը, թե՞ սևը։ Սպիտակ մաշկ ունեցող մարդու ցանած ծաղիկները մի՞թե ավելի գեղեցիկ են։

Այդ օրվանից Ֆաուստինոն այլևս չէր ծիծաղում։ Նա չէր ժպտում նաև վերելակի դուռը բացուխուփ անելիս։

... Նա հաճույքով կթողներ ամեն ինչ և... կսովորե՜ր, կսովորե՜ր երկար ու քրտնաջան, մինչև հասներ իր նպատակին։

Երեխաներից մեկը թռչկոտելով անցավ մարգախոտի միջով։ Լեզուն դուրս ցցած մոտ վազեց Ֆաուստինոյին և՝ Բո՛բի, Բո՛բի, թյո՛ւ, թյո՛ւ...

Ֆաուստինոն էլ չդիմացավ։ Բակի խորքից կառավարիչը բղավոցով շտապեցնում էր աշխատանքը շուտ վերջացնել։ Ջարաննիների մի ոհմակ օղակել էր Ֆաուստինոյին և ոռնում էր։ Երրորդ հարկի պատշգամբից հաչում էր Բոբին...

Ֆաուստինոն ռետինե խողովակի ջրաշիթն ուղղեց երեխաների վրա և ոտքից գլուխ թրջեց նրանց։ Վայնասունով ու լացով նրանք վազեցին մայրերին գանգատվելու։

Ֆաուստինոն սիրում էր ծաղիկներ։ Սիրում էր սովորել։ Ամեն անգամ նա տխրում էր, երբ սինյորան երրորդ հարկից կանչում էր իր աղջկան.

— Բելի՛տա, արի դասերդ սովորիր։

— Չե՛մ ուզում, մա՛մա։

Ֆաուստինոն տխրում էր, որովհետև ինքն այնքա՜ն էր ուզում սովորել, շա՜տ էր ուզում...

Նա, այնուամենայնիվ, նորից մի ծաղիկ պոկեց, արագ դեն նետեց սպասավորական իր զգեստը, հավաքեց գրքերը և փախավ։ Իսկ կառավարիչն արդեն վազում էր նրա հետևից։

— Սևադե՛մ սատանա, խելքի չեկա՞ր։ Չե՛ս փախչի։ Տանտերը ոստիկանատուն կհայտնի, իսկ այնտեղ քեզ մի լավ կջարդեն։

... Բոբին երրորդ հարկի սինյորայի ցեղական շունն էր, իսկ Ֆաուստինոն մի ցեղական շուն էլ չարժեր։ Նա միայն սևամորթ դռնապան էր, որ համարձակվել էր ծաղիկներ սիրել և սովորել։

Ահա և Ֆաուստինոյի պատմությունը։ Սևամորթ այն տղայի, որը շատ էր սիրում ծաղիկներ և սովորել, միշտ ժպտում էր, հանում գլխարկը և խոնարհվում.

— Բարի լո՛ւյս, սինյո՛րա։

— Խորապես շնորհակա՛լ եմ, սինյո՛րա։

Այս պատմությունը ես չհնարեցի։ Շատ բանի ականատես եմ եղել, որոշ բան էլ տղան ինքն է պատմել։

Ռուսերենից թարգմանեց
ՀԵՆՐԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ

# ՏԻԵԶԵՐԱՆԱՎԸ ԾԵՂՎԵԼ ԷՐ

*ԶԱՎԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

Հետևում էին մնացել բոլոր դժվարությունները ու դրա հետ երկրային երկար շատ տարիներ: Հետևում էին տխուր ու հուզումնալից օրեր, որոնք մեծ, շատ մեծ խնդիրների լուծման հետ էին կապված: Իսկ Արկադը. սիրելի, շատ սիրելի Արկադը չկար, որը անձնականգմի հոգին էր, դժվարին օրերին նրա ոգեշնչողը: Ինչպե՞ս կարելի է մոռանալ նրան:

— Մնաք բարով, տիեզերական անդունդներ, մնաք բարով, օտար արևներ. այլևս ձեր ջերմության կարիքը չի զգում արև-աստղի խիզախող ոգին:

Խցիկում նստածները ցնծում էին, խցիկը այլևս խցիկ չէր, խցիկը լցվել էր հուշերով, Երկիր մոլորակի հրաշալի հուշերով, տարիներ առաջվա աղոտված, այժմ պայծառացող դեմքերով:

Խցիկում նստածները երեքն էին՝ Արմենը, Ահմադն ու Լուին, նրանց հոգում Երկիրն էր, այդ գաճաճ տիեզերական մարմինը:

Խցիկում այդ պահին հրաշալի մի քաղաք կար. իր հինավուրց Լուվրյան պալատով ու Էյֆելով. մի գետ՝ քաղաքի երկու մասերը կամրջող, մի հին բերդ՝ Բաստիլիա ու մի նոր երկնաքեր:

Խցիկում այդ ժամանակ մի Խեֆրենի բուրգ կար ու նրա շուրջը ծաղկող այգիներ: Բանանի ստվերում մի լայնեզր գլխարկով Ահմադ կար, հիացած Նեղոսի լայն ալիքներով:

Խցիկում մի Ախթամար կար. մի կապույտ լիճ. նավակի մեջ ժպտացող մի Անահիտ ու ցանցի մեջ թպրտացող տառեխ:

Հետևում էր մնացել Պլուտոնը. հետևում էր մնացել Արև աստղի առաջին մոլորակը: Շուտով նրանք կանցնեն Նեպտունից և Յուպիտերի վրա կհանդիպեն առաջին մշտական կայանի տիեզերագնացներին:

Ազդանշան, լսու՞մ եք, — լռությունը փշրվեց:

Ղեկավարման վահանակին վառվում հանգչում էր կարմիր լույսը:

Երկար բվվոցի պես լսվում էր առջևից եկող. սկզբում թույլ, հետո որոշակի դարձող աղմուկը: Տարածության մեջ նշմարվեց երկար սլաքի տեսք ունեցող մի տիեզերանավ: Ուղարկվեց ազդանշան: Ո՛չ մի պատասխան, նույն միապաղաղ բվվոցից բացի: Երկար փորձում էին կապվել: Նավը մոտեցավ նավին:

Նա անկենդան էր:

Արմենը ոտք դրեց օտար տիեզերանավին: Ահա, ում որ էր, պետք է հանդիպեր մի նոր գիտակից արարածի՝ կա՛մ վերջին շնչում, կա՛մ անկենդան:

Սրտի դողով կատարեց առաջին քայլերը: Ո՛չ մի ձայն, ո՛չ մի շշուկ չէր լսվում ներսից, այնտեղ տիրում էր ճնշող լռություն: Խցիկները բաց էին, կարծես կողոպտված. ոչ մի գրավոր-հիշատակ չկար այնտեղ եղողների մասին:

Մոտեցավ ղեկավարման պուլտին. որից կառուցվածք ուներ և տարիներ առաջ դադարել էր գործելուց: Արմենը սկսեց տնտղել սեղմակները. նրանց կարելի էր գործի գցել: Երկար տատանվելուց հետո նա վճռեց աշխատեցնել նավը և տանել Երկիր: Երբ հեռանում էր վահանակից. նրա հայացքին ընկավ պատին ամրացված սպիտակ մի առարկա: Լուսավորվեց: Դա մի լուսանկար էր, մի հիանալի դիմանկար: Գեղեցիկ վարսեր, սև ու երկարավուն հոնքերի տակ ծիծաղող աչքեր. ուղիղ. գեղեցիկ բերան: Դա աղջկա նկար էր. օտար մոլորակի մի գեղեցկուհու նկար, որը ծածկվել էր երկար տարիների տիեզերական փոշով: Նկարից քիչ հեռու սպիտակ մի սլաք ուղղված էր մի սեղմակի:

Սեղմեց: Խցիկում անծանոթ լեզվի հնչյուններ



տարածվեցին՝ մեղմիկ ու թախծոտ: Դա կանացի ձայն էր. որ կարծես ինչ-որ բան էր խնդրում:

Արմենը երկար լսում էր: Ձայնը լռեց՝ հատ-հատ շեշտելով վերջին բառերը:

— Ի՞նչ ես անում, Արմեն, — խոսափողում լսվեց Լուիի ձայնը:

— Լսեցի՞ք:

— Լսեցինք, — մռայլ պատասխանեց նա:

— Գործի՛ եք գցել էլեկտրական թարգմանիչը:

Արմենը կրկին սեղմեց դարչնագույն պատի սեղմակը: Խոսափողում լսվեց թարգմանությունը

«Եթե որևէ մեկը ոտք դնի այս դժբախտ նավի

վրա, կցանկանայինք կատարեր մեր խնդրանքը՝ հանուն Իգա դժբախտ մոլորակի, որը ներկայումս կործանման եզրին է կանգնած։ Մենք պետք է փնտրեինք մի մոլորակ, մենք պետք է փրկեինք նրանց կյանքը։ Երկար թափառումներից հետո հաջողվեց գտնել։ Վերադարձին ուսումնասիրեցինք մեկ ուրիշը, որտեղ վարակվեցինք մի սարսափելի հիվանդությամբ, որը բոլորիս անխուսափելի մահ է բերելու։ Այդ մասին ուշ իմացանք, ճանապարհին։ Մի քանի ժամից հետո բոլորս կմեռնենք։ Մեր մարմինները չենք ուզում միայն նավում, քանի որ վարակված ենք։ Փոքրիկ նավով շուտով կհեռանանք, նավը ուղղել ենք մեր մոլորակի կողմը։ Նա անկասկած տեղ չի հասնի, քանի որ բազմաթիվ մարմիններ իրենց ձգողությամբ կշեղեն նրա ճանապարհը։ Եթե մի գիտակից արարած կայցելի այս նավը, թող կատարի մեր թախանձանքը, հանուն մի դժբախտ մոլորակի, որը Մեծ Շան աստղերի մոլորակներից է։ Հայտնեք նրանց, որ փրկված են՝ կա մոլորակ, որտեղ պայմանները նույնն են, ինչ որ մերինն է։ Դա Անդրոմեդիի մոլորակներից է։ Այն ժամանակ Իգան կապրի»։

Տիրեց մի երկար, սարսափելի լռություն։

— Ի՞նչ պետք է անենք,— վերջապես խոսեց Ահմադը։

— Փրկել, հարկավոր է փրկել մոլորակի կյանքը,— շշնջաց Արմենը։

— Ինչպե՞ս։

Ծանր էր բոլորի համար մտածել այդ մասին։ Թողնել այն, երբ առջևում Երկիրն է։ Երբ կանչում են քեզ նրա փիրուզե ծովերը, կապույտ երկինքն ու այնքան փայփայած մարդիկ։

— Ես կասեմ,— վերջապես խոսեց Արմենը.— դուք երկուսով, սիրելի Ահմադ և սիրելի Լուի, մեր նավով կվերադառնաք Երկիր, որը մեր կատարած աշխատանքի արդյունքին է սպասում։

— Արմե՛ն։

— Դու կատակո՞ւմ ես, Արմեն։

— Մի՞թե սա կատակ է։

— Ո՛չ, այդ դու չես անի, Արմեն, ավելի լավ է՝ ես։ Դու խմբի ղեկավարն ես և միայն դու ես պարտավոր Երկրին զեկուցում տալու,— կտրուկ ասաց Լուին։

— Ո՛չ դու, ո՛չ Արմենը։

— Լսեք, չէ՞ որ ձեզ սպասում են կին, երեխաներ և, վերջապես, ավելի կարևոր գործեր, մնում է մի Անահիտ, նա էլ գուցե ինձ չի սպասում։

— Արմե՛ն։

— Այլևս չխոսենք, ես այդպես եմ ցանկանում։

Քիչ հետո օտար նավի մեխանիզմը գործեց։ Այն իր ուղուց շեղվել էր։ Արմենը ուղղեց։

Լուին ու Ահմադը երկար ժամանակ հետևում էին հեռացող նավին, որը այլևս չպետք է վերադառնար։

*Ա. ՄԻԼՆ*

(Անգլիացի գրող)



# ԻՆՉՈՒ Է ԻՆՁ ՓԻՂԸ ԴՈՒՐ ԳԱԼԻՍ

*Գազանանոցում եղջերուներ կան*
*Եվ ուղտեր ծուռտիկ ու սապատավոր։*
*Եվ մարդանման շատ կապիկներ կան*
*Ու կոկորդիլոս մի մեծ, ահավոր։*
*Ձագուկների հետ արջն է ման գալիս։*
*Դե, ամեն տեսակ գազաններ էլ կան։*
*Բայց ինձ միմիայն փիղն է դուր գալիս։*
*Փղի հետ նույնիսկ ընկերացա ես,*
*Թե ինչի համար՝ հիմա կասեմ ձեզ։*

*— Բարև՛, — ասում եմ ես գետաձիուն.*
*Նա ինձ չի լսում, ասես թե խուլ է։*
*— Բարև՛, — ասում եմ ես ծովացուլին,*
*Ու ծովացուլն էլ նրա պես լուռ է։*
*Այդ հիմար փոկն էլ համր է նրանց պես։*
*Ու միայն փիղն է գլուխը շարժում*
*Եվ ասում է ինձ. «Բարև՛, բարև՛ ձեզ»։*
*Ամենից կիրթը փիղն է այդ այգում,*
*Ա՛յ թե ինչու եմ ես նրան հարգում։*

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԱԹՈՌՆԵՐ



*Ես նստել եմ աթոռին։ Կապիտան եմ, տե՛ս։*
*Ու դեպի ծովն եմ անվախ ես ուղևորվում։*
*Սլանում եմ փոթորկոտ ծովով փրփրադեզ*
*Ու ծովահեն նավերի դեմ եմ արշավում։*
*Երբ ուզում եմ ահարկու մի վագր դառնալ,*
*Երկրորդ աթոռն եմ վերցնում ես իսկույնևեթ։*
*Սկսում եմ մայրիկիս վրա գոռգոռալ*
*Ու չեմ ուզում էլ խոսել մեծ քույրիկիս հետ։*
*Նստած երրորդ աթոռին, որպես օդաչու,*
*Ես ամպերը ճեղքելով Լուսին եմ թռչում։*
*Ահա Լուսինն է գալիս կանգնում իմ առջև*
*Եվ ասում է՝ հարգանքով՝ բարև՛ ձեզ, բարև՛։*
*Բայց, ա՛յ թե ինչ...մայրիկս ճաշեր է բերում*
*Ու սեղանի շուրջն է նա ինձ հրավիրում։*
*Եվ նորից ես միևնույն տղան եմ ահա,*
*Դեռ մի քանի տարեկան փոքրիկ երեխա։*
*Իսկ այդ չորրորդ աթոռին այնպե՛ս եմ տխրում,*
*Նա ինձ կապույտ երկնքից միշտ ցած է բերում։*

*Ռուսերենից թարգմ.*
*Ս. ՄԿՐՏՉՅԱՆԸ*

# ԱՄԵՆԱՄԵԾ ՁՄԵՐՈՒԿԸ

ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Եթե ընկերներից մեկի գրպանում տասցենտանոց դրամ կա, իսկ մյուսն ընդամենը մեկ ցենտանոց ունի կամ գուցե չունի այդքան էլ, ապա տասցենտանոցի երջանիկ տերը պետք է մի լավ մտածի, թե ինչի վրա ծախսի փողը և արժի՞ արդյոք իր ունեցածի մասին ընկերոջն ասել։

Նման երջանիկներից էր Հեփի Բաշմանյանը, որը դանդաղ գնում էր Սան-Բենիտո և Մ-Սթրիթ փողոցների անկյունում գտնվող Կորխմազյանների տան կողմը, որտեղ փոքրիկ պուրակում արդեն նստած էին տղաներն ու խոսում էին փողի մասին։ Երկուսը մեկական ցենտ ունեին, մեկը՝ երկու ցենտ, իսկ չորրորդը ոչինչ չուներ։

— Ինչի՞ մասին եք խոսում, տղերք,— ասաց Հեփը։

— Փողի մասին,— պատասխանեց Արա Կորխմազյանը։

— Եվ ի՞նչ։

— Քո կարծիքով ո՞րն է լավ,— ասաց Շարքին,— փողը ծախսե՞լը, թե՞ հավաքելը։

— Եվ ո՞րն է լավ,— ավելացրեց Ռուբեն Մալաթյանը,— ազնվորեն փող վաստակե՞լը, թե՞ գողանալը։

Բոլորը գիտեին, որ Հեփը գող է, և Ռուբենի հարցը, որ տրված էր բավական լրջությամբ, նրանց աշխուժացրեց, բայց տղաները թաքցրեցին իրենց ժպիտը, իսկ Հեփը ձևացրեց, թե առաջին անգամ է այդ բառը լսում։

— Վաստակելն է լավ,— ասաց Հեփը։— Ազնվորեն վաստակես՝ բոլորը քեզ կհարգեն, գողություն անես՝ բոլորը կարհամարհեն։

— Ճիշտ է,— համաձայնեց Արան,— բայց փող վաստակելը դժվար է, իսկ գողանալ կարելի է առանց որևէ դժվարության և շատ էլ կարելի է հարստանալ։

— Իսկ քո կարծիքով ի՞նչը կարելի է գողանալ։

— Ինչ որ ուզես,— պատասխանեց Ռուբենը։— Կարծում ես ծուռ գրված բաներ քի՞չ կան։ Դու վերցնում ես դրանք, և այն ժամանակ փողերը գրպանումդ սկսում են զնգզնգալ։ Ինչքա՞ն փող ունես, Հեփ։

— Տասը ցենտ։

— Իսկ ես միայն մի ցենտ ունեմ,— ասաց Ռուբենը։— Հայրիկս ինձ գործով քաղաք էր ուղարկել։ Իսկ քեզ փողն ո՞վ էր տվել։

— Ես էլ էի հորս գործով քաղաք գնացել։ Նա էլ հենց տվել է փողը։

— Մի անգա՞մ ես գնացել։

— Ոչ, հինգ անգամ։ Ծերուկն ինձ երկուական ցենտ է տալիս՝ մի ցենտ գնալու, մի ցենտ գալու համար։

— Ինչ-որ շատ է հայրդ քեզ տեղ ուղարկում։ Հինգ անգամը շատ է։

— Հինգ անգամն այնքան էլ շատ չէ։

— Հինգ անգամ գնացել ես քաղաք ու վերադարձե՞լ։ Ախր, Հեփ, ձեր տան ու քաղաքի միջև յոթ թաղամաս կա։ Առավոտյան դու ոչ մի ցենտ չունեիր, իսկ նախաճաշից հետո տասը ցենտ ես վաստակել։ Դուրս է գալիս, որ դու հինգ անգամ գնացել եկե՞լ ես։

— Ճիշտ է։ Իսկ ի՞նչ կա որ։

— Փչում ես,— ասաց Շարքին։— Դու երեկ ոչինչ էլ չունեիր։

Հեփը փողը ցույց տվեց։

— Այնուամենայնիվ որտեղի՞ց ես ճարել այդ փողը։

— Արդեն ասացի։

— Փչում ես։

— Ասում ես՝ փչո՞ւմ եմ։ Հապա մի վե՛ր կաց,— ոտքի կանգնեց Հեփը։

— Ես կռիվ անողը չեմ,— ասաց Շարքին։— Ամեն անգամ իմ քիթը ջարդում են։

— Ուրեմն ներողություն խնդրիր։

— Դե լավ, չես փչում, Հեփ։ Հիմա ասա, թե որտեղից ես ճարել փողը։

— Երկու դատարկ պարկ եմ գտել հացի խանութի մոտ ու ծախել Թեյլըրսուդ-ավենյուի վըրայի հնավաճառին՝ ամեն մեկը հինգ ցենտով։

— Դու պարկերը գտար Սուրբ Հուակինի վրայի հացի խանութի մո՞տ,— հարցրեց Շարքին։

— Այո, բեռնահարթակի վրա։

— Իսկ գուցե դու հացի խանութի՞ց ես թռցրել, երբ այնտեղ մարդ չի եղել,— հարցրեց Շարքին։

— Ոչ, վերցրել եմ բեռնահարթակի վրայից։ Ես հենց գնում էի սպորտ-հրապարակ, երբ պարկերը վերցրի ու տարա Թեյլըրսուդ-ավենյուի հնավաճառին։

— Ի՞նչ պիտի անես փողը,— հարցրեց Արա Կորխմազյանը։

Չգիտեմ։

— Արի ծախսենք,— առաջարկեց Վահան Բոզոյանը։

— Իսկ ինչո՞ւ պիտի փողս ծախսեմ։ Կարող եք դուք ձերը ծախսել, եթե ուզում եք, իսկ իմը ես կպահեմ։ Ես դրանից հետո հացի խանութի մոտով օրը վեց-յոթ անգամ կանցնեմ և եթե հաջողվի մեկ կամ երկու-երեք պարկ վերցնել, կտանեմ հը-

նավահանգին ու կծախեմ հինգական ցենտով, մինչև որ մի դոլլար կունենամ:
— Խաղով ամեն բան կարելի է անել,— վրա բերեց Շարքին:
— Մի քանի օր էլ չի անցնի, ես դոլլար կունենամ:
— Իսկ ինչի՞դ է պետք դոլլարը, Հեփ:
— Կպահեմ:
— Եթե որևէ բան ես ունենում, սիրտդ հանգիստ է լինում,— ասաց Արան:
— Սիրտդ հանգիստ է լինում, երբ ոչինչ չունես,— առարկեց Ռուբենը:
— Եվ երբ որևէ բան ես ունենում, էլի լավ է,— պնդեց Արան:— Փող կուտակիր և այլևս չես ուզենա ծախսել: Ինչքան շատ ես փող ունենում, այնքան շատ ես ուզում էլի ունենալ: Հեփ, դու Սուրբ Հոակինի վրայի հացի խանութից պարկեր կթռցնես և շուտով Ֆրեզնոյի ամենահարուստ տղան կդառնաս:
— Ես չեմ գողանում,— պատասխանեց Հեփը: Ես վերցնում եմ միայն այն, ինչ հացի խանութից դուրս են գցում, և ծախում եմ նավահանգին:
— Դու կհարստանաս և այլևս չես ուզենա ճանաչել մեզ՝ աղքատներիս,— ասաց Վահանը:



— Մի՛ վախեցիր, ես այդպիսին չեմ:
— Դու միայն այդպես ասում ես: Մենք չորսով ընկերներ ենք, բայց դու մեր ընկերը չես: Եթե խակական ընկերը տասը ցենտ է ունենում և օրն էլ հուլիսյան է լինում ու տոթ, նա պետք գնա Երանոսի խանութը, որ ուղիղ դեմ-դիմացն է, և մեզ համար ուղղակի սառնարանից մի համեղ ծմերուկ առնի-բերի այստեղ և ամեն մեկին մի մեծ դիլիմ տա:
— Լավ կլինի, որ դուք ձեր փողերը իրար վրա դնեք ու գնաք ծերուկ Երանոսի մոտ ծմերուկի և ինձ էլ մի դիլիմ տաք:
— Դու մեր ընկերը չես,— սկսեց Արան:— Մենք չորսով ընկերներ ենք, իսկ դու քո ցենտերով մեզ ընկեր չես, դու ուղղակի անցորդ ես:
— Դու միայն գալիս ես աղքատներին տեսնելու,— ասաց Ռուբենը:
— Եռնախորշերն ես այցելում,— ավելացրեց Շարքին:
— Ես հարստանալ եմ ուզում,— պատասխանեց Հեփը:
— Դու արդեն հարուստ ես և, մնացած հարուստների նման, գործ չունես աղքատների հետ,— ասաց Ռուբենը:
— Ես ծմերուկ առնողը չեմ:
— Որ այդպես է, պաղպաղակ առ:
— Ես ոչինչ չեմ ուզում առնել, ես ուզում եմ այս փողը պահել:
— Դու ժլատ ես:
— Ես քո քիթը կջարդեմ, Ռուբեն:
— Հիմա շատ շոգ է, ես կռվել չեմ ուզում:
— Դե ներողություն խնդրիր:
— Լավ, դու ժլատ չես, Հեփ, դու ուղղակի խոզ ես:
— Վե՛ր կաց:
— Դե լավ,— ասաց Ռուբենը,— եթե խոզ էլ չես, հապա ի՞նչ ես:
— Ես տնտեսող եմ: Ձեռներեց ու տնտեսող: Էմերսոնի դպրոցի միսս Ջեմբերսը հայերի մասին այդպես ասաց:
— Տաղանդավոր, ձեռներեց և տնտեսող — ահա թե ինչ ասաց միսս Ջեմբերսը,— առարկեց Շարքին:— Ես այդ դպրոցում էի, և նա այդ բանն ասաց, որովհետև ուզում էր իմանալ, թե ես ինչո՞ւ այնպես չեմ, ինչպես մյուս հայերը: Նա ուղղակի չգիտի, որ հայերը միաժամանակ ուրախ ժողովուրդ են, որ նրանք կարողանում են նաև ուրախանալ, ծիծաղելի բաներ պատմել, կատակել: Ես կուզենայի ուրախ մարդ լինել և ոչ թե հարուստ:
— Չէ՛, հարուստ լինելը ավելի լավ է:
— Դու հարուստ մարդ կլինես,— ասաց Շարքին:— Բայց ուզում ես դու այդ, թե ոչ, Հեփ, կլինես նաև ուրախ: Դու նույնիսկ ուրախ լինելու համար ջանք էլ չես թափի, ուղղակի ուրախ կլի-

նես, եթե անգամ չուզենաս։ Հասկանո՞ւմ ես, դու ուրախ տղա ես, բայց կարող ես նույնիսկ այդ չիմանալ։

— Վեր կաց, պիտի կռվենք, — նորից սկսեց Հեփը։

— Դե լավ, խոսքերս ետ եմ վերցնում։ Բոլորը ետ եմ վերցնում։ Դու միշտ կռվել ես ուզում։

— Բաշմանյանների համար պատիվն ամեն ինչից վեր է։

— Ամեն ինչից վեր է, բացի փողից, — խոսեց Արամը։ — Ես էլ իմ խոսքերս ետ վերցնում։ Մենք

— Բոլո՞րս պիտի գնանք, — հարցրեց Շարքին։

— Իհարկե։ Չէ՞ որ բոլորս ենք ծմերուկ ուտելու։ Գնանք, գուցե արդեն պարկերը ընկած են այնտեղ՝ երկու-երեք հատ կամ գուցե և չորս։

Բեռնահարթակի վրա պարկեր չկային, բայց շատ կային գռների հետևում։ Պարկերը դարսերով կապած էին իրար և մոտերքում էլ ոչ ոք չկար։

Հեփը թռավ բեռնահարթակի վրա, մի կապոց վերցրեց ու ցած գցեց։ Շարքին բռնեց պարկերն, ու բոլորը նետվեցին սպորտհրապարակի կողմը։ Տղաները կանգնեցին միայն Լեհ-Ցենանների փոր-



այնտեղ մեզ լավ էինք զգում, չնայած փող չունեինք, բայց ահա՛ դու եկար քո փողով և ամեն ինչ փչացրիր։ Մի՛ մոռացիր, Հեփ, որ հիմա 1919 թիվն է, պատերազմը վերջացել է։

— Հետո՞ ինչ...

— Ապրիր և թույլ տուր, որ ուրիշներն էլ ապրեն, — ահա այսպիսին է քաղաքականությունը ամբողջ աշխարհում։ Եվ պետք չէ, որ դու այստեղ քո հարստությամբ պարծենաս։

— Ես չեմ պարծենում։

— Չէ, պարծենում ես։

— Ես ուղղակի ուզում եմ փող խնայել։

— Այ հենց դա էլ պարծենալ եմ համարում։

— Ես եկա այստեղ, դուք հարցրիք, թե ինչքան փող ունեմ, ես էլ պատասխանեցի, որ տասը ցենտ ունեմ։ Դուք անընդհատ ուզում եք, որ ես գնամ Երանոսի մոտ ծմերուկի։ Եթե իրոք ծմերուկ ուզում եք, գնանք Սուրբ Հոակինի վրայի հացի խանութը, տեսնենք, գուցե էլի պարկեր են դուրս թափել։ Եթե լինեն, մենք ամեն մի պարկը հինգ ցենտով կծախենք, Ռեյլրոուդ-ավենյուի հնավաճառին, իսկ հետո ծմերուկ կառնենք ու կուտենք։

րիկ գործարանի մոտ և հաշվեցին պարկերը։

— Քսանհինգ, — ասաց Հեփը։ — Ամեն մեկին՝ հինգ հատ։ Դուրս է գալիս... ամեն մեկին՝ քսանհինգ ցենտ։

— Ամեն ինչ արեցինք ես ու դու, — առարկեց Շարքին, — էլ ինչո՞ւ պիտի հավասար բաժանենք բոլորին։

— Պարկերը մենք կբաժանենք հավասար, քսանհինգ հատն էլ, — պատասխանեց Հեփը։

Տղաները պարկերը տարան Ռեյլրոուդ-ավենյուի հնավաճառին, և նա ամեն մեկին մի քառորդ դոլլար տվեց։ Հետո նրանք վերադարձան Կորխմազյանների տան մոտի զով ու ստվերոտ պուրակը, որը Սան Բենիտոյի և Մ-Սթրիթի անկյունում էր գտնվում, ու նստեցին հանգստանալու։ Վերջապես Հեփը ասաց.

— Հիմա ո՞վ է գնալու Երանոսի մոտ ծմերուկի։

Բոլոր տղաներն էլ միաբերան ասացին. «Ես»։

Բայց միայն Արա Կորխմազյանը լուռ վեր կացավ գետնից ու, փողոցը կտրելով, գնաց դեպի փոքրիկ խանութը։

Նա մի հոյակապ ծմերուկ բերեց, և երբ ընկերները ուտում էին, Շաքքին ինչ-որ մի ծիծաղելի բան ասաց ծմերուկի կորիզների մասին, և բոլորն էլ այնպես սկսեցին հռհռալ, որ կարծես կյանքում իսկի չէին ծիծաղել ու ոչ մի կերպ չէին կարողանում կանգ առնել։ Նրանք այնքան ծիծաղեցին, մինչև Արայի մայրը տանից դուրս եկավ։ Նա կանգնել ու նայում էր տղաներին. պարզապես կանգնել ու նայում էր։ Եվ տղաները լռեցին։

— Արա՛, — հարցրեց Հեփը, — մայրիկդ ամենից շատ աշխարհում ի՞նչ է սիրում։

— Կարծում եմ, որ ինձ։ — Արան վեր կացավ ու մի քանի քայլ արեց դեպի խանութը։

— Ո՞ւր ես գնում, — հարցրեց Ռուբենը։

— Ես մի ծմերուկ էլ եմ ուզում առնել, Երանոսի մոտի ամենամեծ ծմերուկը՝ տասնհինգ ցենտի։

— Ինչո՞ւ պիտի էլի դու ծմերուկ առնես, ծախսես քո բոլոր փողերը։

Բայց Արան արդեն գնում էր և շուտով վերադարձավ՝ ձեռքին Կլոնդայկյան ամենամեծ ծմերուկը, որի նմանը երբեք չէին տեսել։ Տղաները ծմերուկը կիսեցին և սկսեցին ուտել։ Հետո Հեփն ասաց.

— Արա, չէ՞ որ ծմերուկ առնելու քո հերթը չէր, ինչո՞ւ դու այդ արեցիր։

— Այդպես ուզեցի։

— Ինչո՞ւ։

— Չգիտեմ, ուզեցի ու վերջ։

Սակայն բոլորը գիտեին, որ նա փողերը ծախսեց, որովհետև նրան այդպիսի փողը պետք չէր։ Հեփին դա դուր եկավ, բայց այնուամենայնիվ նա մտածեց. «Արան երբեք միլիոնատեր չի դառնա»։

Ռուս. թարգմ. Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ

## Ծղրիդը

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Սիրուն շորեր հագցրին,
Դիմակ դրին աչքերին,
Բեմ հանեցին ծղրիդին՝
Այդ բեղավոր արտիստին։
Երբ դահլիճը ծափ տվեց,
Մեր երգիչը շփոթվեց,
Խեղճը կարծես խլացավ,
Դահլիճից դուրս սլացավ,
Գլուխն առավ, կիսաշունչ
Փախավ, մտավ խոր մի քունջ։
Եվ այն օրից մինչ այսօր
Դեռ երգում է մեղմածոր . . .
Ա՜յ քեզ երգիչ բացակա,
Ինքը չկա, ձայնը կա։



## ՀԱՅՐԻԿԻՍ ՀԵՏ

ՍՈՒՐԵՆ ԴԻԼՈՒՆՑ

Ոտակի մոտ մեր լեռնային,
Անտառի լայն բացատում,
Վրաններն են մեր ֆերմայի,
Ուր իմ հայրն է աշխատում։

Հովիվն է նա մեր կոլխոզի,
Հոտն է հսկում սարերում,
Աստղ ունի նա հերոսի,
Քաջ է եղել մեծ կռվում։

Ամառային արձակուրդին
Շրջում եմ միշտ հորս հետ
Ու խնամում գառնուկներին
Արոտներում հոտավետ։

Անասնաբույժ պետք է դառնամ,
Որոշել եմ ես արդեն,
Որ մեր գյուղը վերադառնամ,
Հայրիկիս հետ աշխատեմ։

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ



## ՎԱԽԿՈՏ ՀԵՐՈՍԸ

ԱՇԱՐԱՏ ԱՅՎԱԶՅԱՆ

Երբ տեսնում է նապաստակ,
Մտնում է մոր փեշի տակ,
Վախից գցում է գույնը,
Երբ որ հաչում է շունը,
Բզեզ տեսնի նա այգում,
Սիրտը արագ է զարկում,
Ահից այնպե՜ս է դողում,

Երբ տեսնում է մի սողուն։
Թե մուկ տեսավ մառանում,
Թաքստոց է որոնում։

Իսկ թե հարցնես դու նրան՝
Ի՞նչ կդառնաս, Մարտիրոս,
Կասի նա քեզ անվարան.
— Դառնալու եմ ես հերո՜ս։




Սահարա անապատում պատահաբար հայտնաբերվել է ստորերկրյա մի ծով, որի տարածությունը կազմում է 60 հազար քառակուսի կիլոմետր: Ջուրը աղի չէ: Գիտնականները հույս ունեն, որ քաղցրահամ ջրի այդ հսկայական պաշարները կարող են Սահարա անապատը վերածել ծաղկուն մարգագետինների: Ծովը գտնվում է 420 մետր խորության վրա, որտեղից էլ դուրս է ժայթքել՝ առաջացնելով 80 մետր բարձրությամբ շատրվան:

Երկար ժամանակ հանելուկ էր մնացել, թե ինչու մանր ձկները հենց այնպես ընկնում են գրենլանդական շնաձկան երախը: Նորվեգացի գիտնականները վերջերս պարզել են, որ այդ շնաձկան աչքերը լույս են արձակում: Դրանով էլ նա հրապուրում է խեղճ ձկնիկներին:

## ՄԵՂՐԻ ԾԱՌ

Չիլիում կա մեղրատու արմավենի: Այն արժեքավոր է գլխավորապես նրանով, որ ծառի հյութը իր մեջ պարունակում է մեծ քանակությամբ շաքար: Տեղացիները ծառը ներքևից սղոցում են այնպես, որ ներքև ընկնելիս հենվում է հարևան ծառերին և այդպես մնում թեք դրությամբ: Կտրված տեղից 40 օր շարունակ հոսում է վճիտ հեղուկը: Մեկ ծառը տալիս է մինչև 400 լիտր հյութ: Այդ հյութը եփելուց հետո թանձրանում է, դառնում մեղրի նման:

Բրազիլիայում ապրում է մրջյունների մի հետաքրքիր տեսակ: Երբ մրջնանոցում բնակիչների թիվը շատ է մեծանում և առաջանում է գերբնակեցում, մրջյունների մի մասը հավաքվում ու կազմում է մի վիթխարի գունդ: Այդ գունդը գլորվելով հասնում է մոտակա առվակը կամ գետը և լողում հոսանքն ի վար: Ցամաքի հանդիպելուն պես գունդը ցրիվ է գալիս, և նորաբնակներն սկսում են իրենց համար բնակարան կառուցել:

## ՁՈՒԿ... ԳՆԴԱԿ

Խաղաղ օվկիանոսի Կորալյան խութերում ապրում են միկրատամնավոր ձկներ: Սրանց դուրս պրծած ծնոտները նման են թութակների կտուցներին: Հենց որ



այս ձկները տեսնում են իրենց թշնամուն, իսկույն դառնում են գնդաձև և ամբողջովին ծածկվում փշերով: Ջկնորսական կարթն ընկնելիս նույնպես դառնում են գնդաձև և ընդմիշտ մնում այդպես: Այդ ձուկը երբ չորացնում են արևի տակ, փշերը թափվում են, և երեխաները նրանով գնդակ են խաղում:

19-րդ դարում Վաշինգտոնի նահանգի ֆերմերներից մեկն իր տունը կառուցել էր մեկ սոճի ծառից: Տունը բաղկացած էր երկու հարկից և ուներ տասնչորս սենյակ: Այդ սոճին եղել է գարմանալիորեն ողիղ և ունեցել է



վիթխարի չափսեր: Սոճու բարձրությունը 90 մետր է եղել:

Ջուրը տաքացնելու համար տասն անգամ ավելի ջերմություն է պահանջվում, քան մյուս նյութերը: Դրանից է, որ նա դանդաղ է սառչում: Հատկապես այդ հատկության շնորհիվ է, որ մենք ապրում ենք Երկրի վրա: Օվկիանոսները թույլ չեն տալիս, որ տիեզերական տարածությունում թռչող մեր մոլորակը ցերեկը չափազանց շատ տաքանա, իսկ գիշերը՝ սառչի: Լուսնի վրա ջուր չկա և դրա համար էլ այնտեղ գիշերվա ու ցերեկվա ջերմաստիճանի տարբերությունը կազմում է 270 աստիճան:

Մեկ տոննա հացահատիկ ստանալու համար պահանջվում է... հազար տոննա ջուր: Նույնքան ջուր է հարկավոր մեկ տոննա շաքարի ճակնդեղից շաքար ստանալու համար: Մեկ տոննա բամբակը խմում է... 10 հազար տոննա ջուր:

# ԿԱՐՈ՞Ղ ԵՆ ԱՐԴՅՈՔ ՄԱՐԴԻԿ ՁԿԱՆ ՆՄԱՆ ՇՆՉԵԼ

«Ջեներալ էլեկտրիկ» ֆիրմայի ցուցահանդեսներից մեկում վերջերս ցուցադրեց մի հետաքրքրական փորձ. ջրով լի ակվարիումի մեջ իջեցրեց հատուկ սիլիկոնային պարկի մեջ դրված մի ղափաստանային կրծող կենդանի: Պարկի պարունակած թթվածինը միայն տասը րոպե կարող էր բավականացնել: Բայց որքան զարմացան հանդիսատեսները, երբ տասը րոպե անցնելուց հետո էլ այդ կենդանին ազատ շնչում էր: Մի քանի ժամ պարկում մնալուց հետո կենդանին հանգիստ քնեց, իսկ երբ նրան դուրս հանեցին պարկից, տեսան, որ միանգամայն առողջ է:

Ամերիկյան քիմիկոս Ք. Ռոբի կարծիքով այն նյութը, որից պատրաստված է պարկը, թույլ է տալիս, որ ջրից թթվածին մտնի պարկի մեջ ու հեռացնի կենդանու արտաշնչած ածխաթթու գազը:

Ռոբը կարծում է, որ վեց խորանարդ մետր կարողություն ունեցող պարկի մեջ մարդը կարող է անսահմանափակ երկար մնալ ջրի տակ: Փորձերը շարունակվում են մինչև հիմա:



# ԳՆԱՑՔ... ԱՌԱՆՑ ԱՆԻՎՆԵՐԻ

*Ֆրանսիացի ինժեներ Ժան Բերտենը պատրաստել է նոր տիպի գնացքների մի քանի մոդել: Ի տարբերություն ժամանակակից գնացքների, սրանք չունեն անիվներ: Ահա դրանց վագոններից մեկը: Տեսեք, թե ինչքան բարձր է գետնից և գլանվում է մեկ ռելսի վրա: Տուրբոռեակտիվային շարժիչներով աշխատող այդպիսի գնացքները կարող են սլանալ ժամում 400—500 կմ. արագությամբ: Բայց դա դեռ վերջին սահմանը չի: Հզոր շարժիչի դեպքում այն կարող է գերազանցել ձայնի արագությանը: Այդպիսի արագությունից ոչ մի վտանգ չի սպառնա ուղևորներին:*



*Նոր տիպի գնացքները կսլանան ոչ միայն դեպի հեռավոր վայրերը, այլև կերթևեկեն մեծ քաղաքների ներսում, որպես քաղաքային տրանսպորտ: Քանի որ միառելս է, այն կարելի է բարձրացնել տներից էլ վեր և թեթևացնել փողոցները, որոնք շատ են ծանրաբեռնված:*

*Ժան Բերտենը այժմ արդեն սկսել է փորձարկումներ կատարել: Փորձարկվող վագոնը նախատեսված է 6 հոգու համար: Հետագայում այդպիսի վագոններում կտեղավորվեն 70—100 հոգի:*

# ՈՐՏԵՂԻ՞Ց Է ԱՌԱՋԱՑԵԼ «ՍՏԱԴԻՈՆ» ԲԱՌԸ

Հին հույները չունեին մետրական չափեր: Օլիմպիական խաղերի ժամանակ նրանց օգտագործած չափը կոչվում էր ստադիա: Դա սովորական չափ չէր: Դրա հիմքում ընկած էր այն քաղաքի քրմապետերի ներբանի երկարությունը, որտեղ անց էին կացվում վազքի մրցումները: Վեց հարյուր ներբանաչափը կոչվել է «ստադիա»: Քանի որ քրմապետերի ոտքերը տարբեր չափսի էին, հետևապես ստադիաները եղել են տարբեր երկարության: Մեկ ստադիայի երկարությունը, ներկայիս մետրական չափով, եղել է 176-ից մինչև 192 մետր:

Հիմնականում ստադիա նշանակել է վազքուղի՝ քարե սալիկներով: Հետագայում այդ տարածության երկարությունը մեծացել, հասել է մինչև վեց, ութ, տասներկու և մինչև անգամ քսանչորս ստադիայի, որը կազմում է համարյա 5000 մետր:

Անցել են հազարամյակներ: Երկարության չափերը փոխվել են, բայց հին հույների սկզբնական «ստադիա» անվանումը վերափոխվել, կոչվել է «ստադիոն», որը հնչում է աշխարհի բոլոր լեզուներով:



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Մեր պատանի տեխնիկագործողները»**

ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

ԽԱՉԲԱՌ-ՇԱԽՄԱՏ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ. — 1. Հունգարացի գրոսմայստեր: 3. Եվրոպական պետություն, որի անվամբ կոչվում է շախմատի սկզբնախաղերից մեկը: 4. Շախմատի տախտակի վանդակ: 5. Հերթական խաղ: 6. Հայ անվանի շախմատիստ, կոմպոզիտոր: 9. Ուկրաինացի գրոսմայստեր: 11. Աշխարհի շախմատի էքս-չեմպիոն: 12. Կղզի, որտեղ տեղի ունեցավ 1962 թ. հավակնորդների տուրնիրը: 13. 1954 թ. երիտասարդ վարպետների տուրնիրի հաղթողը: 14. Քաղաք, որտեղ տեղի ունեցավ 1963 թ. շախմատի աշխարհի առաջնությունը: 19. 1965 թ. Ցյուրիխի անվան տուրնիրի վայրը: 21. Աշխարհի չեմպիոն (երկարակյաց): 23. Շախմատային ֆիգուր: 24. Հունգարացի գրոսմայստեր: 27. Ռուս նշանավոր շախմատիստ: 28. Մինսկցի գրոսմայստեր: 30. Սպորտային խաղ: 32. Շախմատային ֆիգուրի արժեք: 33. Շախմատային տերմին: 35. Ռիգացի գրոսմայստեր:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ. — 2. ԳՖՌ-ի գրոսմայստեր: 5. Շախմատիստ դաշնակահար: 7. ԳԴՌ-ի գրոսմայստեր: 8. Ֆուտբոլային թիմ, որի երկրպագուն է Պետրոսյանը: 10. Ոչ-ոքի




Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 06817: Պատվեր՝ 916: Տպաքանակ՝ 22 100: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/VI, 1966 թ.: ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:*

Գինը՝ 20 կ.

տեսակներից մեկը շախմատում: 15. Աշխարհի շախմատի չեմպիոն: 16. Կապաբլանկայի հայրենիքը: 17. Վիեննայի շախմատիստ: 18. Դանիացի գրոսմայստեր: 20. Գրոսմայստեր՝ Սոչի քաղաքից: 22. Սովետական գրոսմայստեր: 25. Շախմատային ֆիգուր: 26. Երևանյան (1965 թ.) միջազգային մրցման հաղթող: 28. Ընկերություն, որի մեջ ընդգրկված է Պետրոսյանը: 29. Սովետական գրոսմայստեր: 31. Շախմատի տախտակի d4 — d5, e4 — e5 դաշտերի անվանումը: 34. Շախմատային տերմին: 36. Շախմատային թեթև ֆիգուր: 37. Արևելյան ազգային խաղ, որ շատ է սիրում Պետրոսյանը: 38. Շախմատային ֆիգուր:

*Կազմեց ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ*

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 3

*«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» — 1. Ժակ Լուի Դավիդ, «Կանաչի վաճառող կինը»: 2. Ալեքսանդր Վենեցիանով, 19-րդ դար:*

«ՊԻՈՆԵՐ» № 4

*«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» 1. Էդուարդ Մանե (Ֆրանսիա), «Օլիմպիա», «Զոլայի դիմանկարը», «Նախաճաշ մարգագետնի վրա»: 2. Ֆրանս Հալս, «Գնչուհի», «Կիթառահարը», «Ս. Գեվորգի գնդի սպաները»:*

*«ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ» — 1. Թայֆուն: 2. Նանսեն: 3. Շալախո: 4. Լոնդոն: 5. Դուրյան: 6. «Գայանե»: 7. Բարենց: 8. Էլբրուս: 9. «Պիոներ»: 10. Գրոզնի: 11. «Տժվժիկ»: 12. «Կապկազ»: 13. Կրակով: 14. Նանկին: 15. Զորյան: 16. «Գիրքը»: 17. Ազամն: 18. «Ավրորա»: «Աշխատանքը՝ դա բոլոր ուրախությունների աղբյուրն է»:*

*«ԿԱՐՈ՞Ղ ԵՔ»—*

*ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ — Հիդրոէլեկտրակայան, էլեկտրալամպ, տակառ:*




## Ճիշտ պատասխանել են

Կլավա Խաչատրյանը, Հարություն Բեկյանը, Հռիփսիկ Նաջարյանը, Լևոն Տերտերյանը, Խաչիկ Բարսեղյանը, Կարապետ Ներսիսյանը (Լենինական), Ջեմմա Կիրակոսյանը, Սիմոն Մկրտչյանը, Դեղամ Գաբրիելյանը, Վարդան Գինոսյանը, Մասիս Միքայելյանը, Սեդա Ֆահրադյանը, Կարինե Խաչատրյանը, Լարիսա Խաչատրյանը (Թալինի շրջան), Ռուզան Գրիգորյանը, Մնացական Թադևոսյանը (Արթիկ), Էրնեստ Բարսեղյանը, Հրաչիկ Համբարյանը, Ժասմենա Այվազյանը (Ղուկասյան), Սուսաննա Մարտիրոսյանը (Կարմիրի շրջ., գյուղ Թրուչուր), Նորիկ Ղուկասյանը, Արամ Մկրտչյանը, Աշոտ Սահրադյանը (Ապարան), Ռուզան Սարգսյանը (Իջևան), Մեսրոպ Հովսեփյանը (Կամո), Աշոտ Հարությունյանը, Ռաֆիկ Հակոբյանը (Նոյեմբերյան), Սուրիկ Թումանյանը, Վարդան Խանյանը, Շուշանավարդ Ալբունյանը, Անահիտ Հարությունյանը, Սամվել Խաչատրյանը, Անահիտ Ազարյանը (Երևան), Ֆենյա Սահակյանը (Էջմիածնի շրջ., Այգր լիճ), Ռուզաննա Ստեփանյանը (Հոկտեմբերյան), Անժելա Հովհաննիսյանը, Կարինե Հարությունյանը (Սիսիան), Արարատ Սիմոնյանը (Վրաց. ՍՍՌ, Բոգդանովկայի շրջան), Նադյա Հակոբյանը (Ախուրյանի շրջ., գ. Մարմաշեն), Անժելա Ջհանգիրյանը (Լեռնային Ղարաբաղ, Ստեփանակերտ), Նադյա Արեւյանը (Ալավերդու շրջան, գյուղ Հաղպատ):

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ



Այս գծանկարով մեր ժամանակի մեծագույն նկարիչներից մեկը նշանավորեց մարդու տիեզերական առաջին թռիչքը:
Ո՞վ է այդ նկարիչը և որտե՞ղ է ստեղծագործում:



19-րդ դարի երկրորդ կեսին Ֆրանսիայում ստեղծվեց նկարչական մի նոր ուղղություն, որը նորագույն նկարչության սկիզբը դարձավ և տարածվեց ամբողջ աշխարհում:
Ո՞վ է այս ստեղծագործության հեղինակը, որը այս նոր ուղղության հիմնադիրներից մեկն էր:



Մ. Յու. Լերմոնտովի թեմայով կատարված այս աշխատանքը ռուս մեծ նկարչի վրձինն է պատկանում: Ո՞վ է այդ նկարիչը և ուրիշ ի՞նչ գործեր գիտեք նրանից:

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

ինդեքս 77806

# ԵՐԿԻՐ ՀԱՅՐԵՆԻ

Քայլերգ՝ երկձայն խմբի համար

Խոսք՝ Մ. ԿՈՐՅՈՒՆԻ
Երաժշտությունը՝
ԱԶԱՏ ՀԱԿՈԲՅԱՆԻ

«Ծաղկիր, իմ ռեսպուբլիկա» համահայաստանյան երկրորդ ֆեստիվալում այս երգն արժանացել է երրորդ կարգի մրցանակի

Tempo di marcia

Երկիր հայրենի, ծաղկած Հայաստան,
Քո զավակն ենք մենք կամքով անսասան,
Ծաշել են հազար հողմ ու փոթորիկ, .
Բայց կանգնել ես դու սեգ ու անառիկ:

Քեզ փրկեց մահից ձեռքը լենինյան,
Ծաղկիր ցնծալից, մեր մայր Հայաստան,
Հողից չեն պոկի քեզ հողմերը չար,
Երկիր հայրենի, մեր հարազատ մայր:

Կրկներգ

Ահա մեր դիմաց մոր գրկի պես բաց
Դաշտեր, արտեր, լույսով ողողուն,

Մենք սիրով լցված, հողմերում կո
Անապատներն ենք պարտեզի փոխ

Ծով գանձեր ունի հողն իմ արևա
Հանքեր, աղբյուրներ ու ջրեր անտ
Մենք՝ երիտասարդ, կամքով մեր հ
Բաց կանենք երկրի գաղտնիքները

Մենք կտանք նրան մեր սերն անսա
Մեր կյանքը ջահել, հոգին մեր հպ
Որ հարստանա, նոր ուժ ստանա
Մեր հայրենիքը հավիտյան անպա

Կրկներգ